ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Հ·

# ԱՆԱՆՈՒՆԸ ԿԱՄ ԿԵՂԾ-ՍԵԲԵՈՍ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

ԳՐԵՑ

Հ. ԱՂԵՔՍԱՆԴՐ ՄԱՏԻԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1913.

# ԱՆԱՆՈՒՆԸ ԿԱՄ ԿԵՂԾ-ՍԵԲԷՈՍ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

ԳՐԵՑ

Հ. ԱՂԵՔՍԱՆԴՐ ՄԱՏԻԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1913.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

«Անանունը կամ Կեղծ-Սեբէոս», հրապարակ հանելով մեր գլխաւոր դիտաւորութիւնն եղած է քայլ մը յառաջ մղել հայ պատմագրութիւնը, որ դժբախտաբար շատ մխիթարական ներկայ մը չունի: Չունինք այսօր արդի քննադատութեան համապատասխան ազգային ընդհանուր պատմութիւն մը, վասն զի ազգային պատմութեան աղբիւրներէն շատերուն արժէքը տակաւին չէ ստուգուած, կամ եթէ ստուգուած է, ազգայիններուս համար եղած է «Ձայն բարբառոյ յանապատի»․ առ այս դասական օրինակ մըն է Մ. Խորենացւոյ պատմութիւնը, զոր իբրեւ պատմական աղբիւր գործածելու մէջ մեզմէ շատերը Զամչեանէն վար չեն մնար:

Խորենացւոյ ջատագովներու կողմանէ 20—25 տարիէ ի վեր «արդի քննադատ»ներու դէմ եղած բողոքներն ու յան-

դիմանկարներն անշուշտ մեր հասցէին ալ պիտի ուղղուին: Բայց զէթ քողարկուին աննպատակ աղմուկներու առիթ չտալու համար, մանաւանդ որ ուսումնասիրութեանս մէջ մեր Խորենացւոյ մասին ինչ ինչ արտայայտութիւններ կրնան շատ դիւրաւ սխալ մեկնութիւններու ենթարկուիլ, այժմէն կը ծանուցանենք, որ մենք Խորենացին կը նկատենք իբրեւ մատենագիր եւ իբրեւ պատմագիր. իբրեւ մատենագիր՝ Խորենացին մեր գրական ամենամեծ անձնաւորութիւններէն մէկն է, բայց իբրեւ պատմագիր անհամեմատ վար է իր արժէքը: Ահա այս վերջին տեսակէտով է միայն, ինչ որ ըսած ենք Խորենացւոյ մասին. եւ կը յուսանք թէ աշխատութիւնս ընթերցող հասարակութիւնը մեզի ասոր մէջ իրաւունք պիտի տայ:

Քանի մը խօսք ալ ուսումնասիրութեանս մէջ թարգմանուած Պրոկոպիոսի Ա. Հատուածի մասին (տես վարը՝ էջ 18—22): Ինչպէս ծանօթ է արդէն, հատուածս Փաւստոսի համապատասխան հատուածներուն հետ զարմանալի նմանութիւն ունենալով հանդերձ, ունի նաեւ քանի մը տարբերութիւններ. այսպէս Փաւստոսի "Տա-

պուհ արքայն Պարսից,, Պրոկոպիոսի քով եղած է "Բակուր արքայն Պարսից,,. Նոյնպէս Պարսից Թագաւորին եւ Արշակայ միջեւ ծագած թշնամութեան նախընթաց պարագաներն յառաջ բերելու ատեն՝ երկուքն ալ փոքր ի շատէ կը խոտորին իրարմէ: Արդ ասոնց եւ ուրիշ մէկ երկու աննշանակ անհամաձայնութիւններու վրայ չուզեցինք ծանրանալ ուսումնասիրութեանս մէջ, վասն զի ամբողջ հատուածին համեմատական մանրամասն քննութիւնը պիտի ընենք մեր Փաւստոսի նուիրելիք երկրորդ ուսումնասիրութեան մէջ:

Վիեննա, 2 Փետրուար 1913:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԱՆԱՆՈՒՆԸ ԿԱՄ ԿԵՂԾ-ՍԵԲԷՈՍ

1851ին Միհրդատեանց առաջին անգամ լոյս հանեց վաղուց կորուսեալ համարուած Սեբէոսի պատմութիւնը։

Հրատարակութիւնը կը բաղկանար երեք Դպրութենէ. Ա. եւ Բ. Դպրութեանց նիւթն էր Հայոց հնագոյն պատմութիւնը մինչեւ 428, եւ անկէ ետքը մինչեւ Է դարու առաջին քառորդը, Պարսից եւ Յունաց թագաւորներու ցանկը։ Գ. Դպրութիւնը, որ ամբողջ հրատարակութեան երկու երրորդականը կը բռնէ, է Հերակլի արշաւանաց պատմութիւնն մասնաւորապէս, որմէ առեալ կ՚անուանուի “Պատմութիւն ի Հերակլ„։ Ինչպէս յայտնի է բանասիրաց Դպրութեանց այս զանազանութիւնը եղած է առաջին Հրատարակչէն, մինչդեռ ձեռագրաց մէջ կը պակսի նման բաժանում։ Այսպէս ըրած է Հրատարակիչն, ենթադրելով որ Սեբէոսի գրութեան կը վերաբերին նաեւ Ա. եւ Բ. Դպրութիւնները, քաղուածք մը Մ. Խորենացւոյ Պատմագրութենէն։ Այսպէս ընդունուեցաւ նաեւ ժամանակակիցներէն, գոնէ ոչ ոք տարակոյս հանեց կամ բողոքեց։ Առաջին

անգամ Ք․ Պատկանեանն էր, որ 1862ին թարգմանելով Սեբէոսը ռուսերէնի, Յառաջաբանին մէջ քննադատեց զայն, յայտարարելով որ Ա․ եւ Բ․ Դպրութիւնք չեն վերաբերիր Սեբէոսի եւ չունին որ եւ իցէ կախում Մ․ Խորենացւէն։

Այնուհետեւ բանասիրաց յաճախ քննութեան նիւթ դարձաւ կեղծ-Սեբէոսը, որոնք թէեւ ինչ ինչ կէտերու մէջ իրարմէ խոտորեցան, բայց համամիտ գտնուեցան յայնմ, թէ Ա․ եւ Բ․ Դպրութեանց հեղինակն Սեբէոս չէ։ Ասոնց մէջէն յիշատակութեան արժանի է Gutschmid, որ իւր Ueber die Glaubwürdigkeit der armenischen Geschichte des Moses von Khoren աշխատութեան[1] մէջ լուրջ քննադատութեան ենթարկեց Անանունը, եւ յայն յանգեցաւ, որ այդ գրուածքը Խորենացւոյ գործ է եւ անոր իսկական պատմութեան իբրեւ ստուերագիր ծառայած է։ Եւ որովհետեւ նոյն ատեն Խորենացւոյ ժամանակի մասին տակաւին կասկած մը չկար, բնականաբար Gutschmidի գրչին տակ՝ Անանունը նկատուեցաւ գրութիւն մը, զոր Խորենացին գրած ըլլայ Ե․ դարու առաջին կէսէն յառաջ[2]։

---

[1] Ի գիրս՝ Berichte über die Verhandlungen der K. S. Gesellschaft der Wissenschaften. Leipzig 1876.

[2] Ն․ Մառ կը կարծէ թէ Անանունը առաջին անգամ Ե․ դար փոխադրողը Hübschmann է (Մ․ Խորենացի ըստ Պրոֆ․ Ն․ Մառի, ՀԱՆԴ․ ԱՄՍ․ 1895

Սակայն Անանունը այն ատեն իսկական նշանակութիւն մը ստացաւ գիտնական աշխարհի առջեւ, երբ Կարրիէրի նշանաւոր հետազօտութիւնները սկսան Խորենացւոյ պատմութեան իսկութիւնը մէջ տեղ հանել. Հրապարակի վրայ դրուած զէնք մ'եղաւ այլ եւս, որ Խորենացւոյ պաշտպանն ալ, հակառակորդն ալ սկսան գործածել ի նպաստ իրենց տեսութիւններուն։ Այսպիսի ուղղութեամբ առաջին անգամ Ֆեթտեր իւր "Մարաբաս Մծուրնացի" յօդուածովը[1] Կարրիէրի դէմ ուզեց ցուցնել թէ Խորենացւոյ ինքնաստեղծ հնարքը չէ Մարաբաս Կատինա, իբրեւ ապացոյց յառաջ բերելով Անանունի Մարաբասը։ Ճիշտ նոյն ուղղութեամբ եւ նպատակաւ հրապարակ ելաւ Ն. Մառ[2], սակայն Անանունի մասին բոլորովին ուրիշ տեսութեանց յանգեցաւ։ Ֆեթտե-

էջ 110), մինչդեռ Hübschmann այսպիսի կարծիք մը չունի։ Կ'երեւայ թէ յարգելի քննադատը անձամբ ծանօթացած չէ Hübschmannի գործքին, եւ Gutschmidի վերոյիշեալ գրութեան մէկ ծանօթութիւնը (S. 35) սխալ հասկնալով Hübschmannի վերագրած է զայն, որ Gutschmidին է։ Hübschmannի կարծիքը նոյն է Ք. Պատկանեանցի կարծեաց հետ. հմմտ. Zur Geschichte Armeniens und der ersten Kriege der Araber, S. 4.

[1] Festgruss an R. v. Roth zum Doktorjubiläum. Stuttgart, 1893. Թարգմ. ՀԱՆԴ. ԱՄՍ. 1894, էջ 1—5։

[2] Византійскій Временникъ, 1894ի II. մասին մէջ հրատարակուած եւ մէկ մասը թարգմանուած ՀԱՆԴ. ԱՄՍ. 1895 եւ 1896 թուերուն մէջ։

րի համաձայն՝ Անանունը թէպէտ Խորենացիէն անկախ, ինքնուրոյն գրութիւն մըն է, սակայն անկից վերջն է, մինչդեռ Ն. Մառի կարծիքով՝ գէթ որչափ Գր. Խալաթեանցի „Армянскіи эпосъ"ին (էջ 65—67) համառօտ յառաջբերութիւնէն կարելի է եզրակացընել, Անանունը մեր ձեռքը հասած Հայոց Նախնական պատմութեան ամենահին յիշատակարանն է (Ե. դար), որմէ անյայտ մէկը օգտուելով՝ Ագաթանգեղոսի անուամբ եղած արձանագրութեան մը հետ նոր խմբագրութեան մը վերածած եւ Մարաբաս անուան տակ հրատարակած է. եւ Խորենացին ոչ թէ առաջինէն՝ այլ վերջինէն քաղած է իւր պատմութիւնը։ Ն. Մառի համամիտ չեղաւ Գր. Խալաթեանց, որ իւր „Армянскіи эпосъ"[1] ընդարձակ քննադատութեան մէջ Անանունի մասին Մառի դէմ հետեւեալ եզրակացութիւններն տուաւ. 1. Անանունը Ը. դարու անվաւերական գրութիւն մըն է, խմբագրուած Սեբէոսէն, Ս. Գրքէն, Եւսեբիոսէն, Ագաթանգեղոսէն եւ Փաւստոսէն. 2. Նպատակն է Բագրատունիները բարձրացընել. 3. Հասած է մեզի իւր սկզբնական ձեւով, (ի հարկէ ի բաց առնելով Բ. Դպրութիւնը, որ ըստ իրեն՝ Անանունին չի վերաբերիր). 4. Խորենացին անկից խմբագրած է իւր պատմութիւնը։ Այս անգամ Խորենացւոյ պաշտպաններուն կողմանէ Գր. Խալաթեանցի դէմ ա-

---

¹ Анонимъ, какъ позніи апокрифъ, Армянскіи эпосъ, էջ 58—106։

խօյեան հանդիսացաւ Ստ. Մալխասեանց[1], որուն քննադատութեան արդիւնքն այն եղաւ, որ կեղծ-Սեբէոսը Սեբէոսին հետ դարձեալ միացաւ։

Խորենացւոյ միջնորդութեամբ զԱնանունը քննադատող այս կարգ մը ուսումնասիրութիւնները Անանունի խնդրոյն բոլորովին նոր կերպարանք մը տուին։ Բանասիրութիւնը Խորենացւոյ վրայ վերջապէս իւր արդար եւ անյեղլի վճիռը տուած էր. Խորենացին այլ եւս չէր կրնար պաշտպանուիլ իբրեւ Ե. դարու պատմագիր մը։ Նոյն բախտին չհանդիպեցաւ սակայն Անանունը. ընդհակառակն անոր խնդիրը աւելի կնճռոտեցաւ կարծեաց բազմութեան մէջ։ Իրաց այսպիսի վիճակի մը մէջ բնական էր, որ բանասիրաց մտադրութիւնը՝ զԽորենացին ձգելով, աւելի Անանունի վրայ ծանրանար։ Ստոյգ է, խնդրոյն ծանրակշռութեան համեմատ՝ ուսումնասիրութիւններ լոյս չտեսան այս մասին. սակայն երկու կարծիքներ յերեւան եկան, որոնք արժանի են մտադրութեան՝ ոչ այնչափ իրենց նորութեանը, որչափ հետաքրքրական ըլլալուն համար։ Առաջինը միայն հեղինակն է Ն. Ադոնց[2] եւ միւսինը Յ. Թոփչեան[3] եւ Հ. Կ. Տէր-Սահա-

---

[1] Սեբէոսի պատմութիւնը եւ Մ. Խորենացի, Թիֆլիս 1899։

[2] „Начальная исторія Арменіи“ у Себеоса въ ея отношеніяхъ къ трудамъ Моисеа Хоренскаго и Фауста Византійскаго. С. Петерб. 1901.

[3] Արարատ 1901, էջ 518—524։ — Politische und Kirchengeschichte Armeniens unter Ašot I.

կեան[1]։ Ն. Մառ զԱնանունը Ե. դար փոխադրելով. շատ դիւրին էր այնուհետեւ մերձենալ Փաւստոսի, որ արդէն շատերէն "Հայոց Նախնական պատմութեան մը" հեղինակը ճանչցուած էր. ահա այսպիսի քայլ մ'առին այս յարգ. քննադատները։ Երկու կողման տեսութիւններն ալ Փաւստոսի շուրջը կը դառնան. անոնց իրարմէ տարբերութիւնն այն է, որ Ն. Ադոնց՝ Փաւստոսէ գրուած Հայոց Նախնական պատմութիւն մը ընդունելով հանդերձ՝ հաստատուած Փարպեցւոյ այս մասին բացարձակ լռութեան վրայ՝ կ'ըսէ թէ այս պատմութիւնը իր հեթանոսական բովանդակութեան պատճառաւ Ե. դարու հայ կղերէն մէջտեղէն բարձուած է. իսկ Անանունը՝ Փաւստոսի իբրեւ աղբիւր ծառայող ա՛յն ասորական պատմութիւնն է, զոր Սեբէոս Միջագետքի մէջ գտնելով՝ իւր պատմութեան հետ միացուց. մինչդեռ Յ. Թոփչեանի եւ Հ. Կ. Տէր-Սահակեանի համեմատ Անանունը ինքնին իսկ Փաւստոսի պատմութիւնն է։

2. Ահա այս վիճակին մէջ մնացած է այսօր Անանունի քննութիւնը։ Ինչպէս ակնյայտնի կը տեսնուի, բազմազան կարծիքներով բարդուած խնդիր մըն է Անանունի խնդիրը. ո՛վ է գրութեանս հեղինակը, ե՛րբ գրուած է,

---

und Smbat I. Berlin 1905, S. 3. — Die Anfänge des armenischen Mönchtums mit Quellenkritik, 1904, S. 3—14.

[1] Հ. Ալիշան. — "Հայաստան յառաջ քան զլինելն Հայաստան". ի ծանօթ. 286—288։

մեր ձեռքը հասածը սկզբականն է թէ խմբագրուածը, ահա խնդիրներ՝ որոնք տակաւին լուծուած չեն հակառակ իրենց կարեւորութեան։

Բանասիրաց մտադրութեան կը յանձնենք առաջիկայս, որուն մէջ պիտի ջանանք լուծել Անանունի այս բարդ խնդիրը։ Թէ յաջողա՞ծ ենք, պատասխանը կը թողունք նոյնպէս բանասիրաց։ Մեր ըսելիքը ընդհանրապէս կը մերձենայ Յ. Թոփչեանի եւ Հ. Կ. Տէր-Սահակեանի (միջնորդաբար նաեւ Ն. Մառի) կարծեաց, բայց բոլորովին ուրիշ ճանապարհով։ Պարզ ըսելու համար՝ յարգելի կարծեկիցներն իրենց տեսութիւնը համոզեցուցիչ կերպով չեն կըրցած ապացուցանել. մենք պիտի փորձենք նոյնը բարեփոխելով ապացուցանել բոլորովին նոր փաստերով:

Յ. Թոփչեանի առաջին եւ ամենագլխաւոր ապացոյցն է Անանունի Ա. եւ Բ. Դպրութեանց բաժանումը (Die Anfänge, S. 14. Արրտ. 1901, էջ 522), որ՝ ինչպէս յայտնի է Միհրդատեանցի մէկ հնարքն է։ Երկրորդն է Անանունի “զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն„ (Սեբէոս էջ 1) խօսքը, որուն մէջ Փաւստոսի Խոսրով Բ., Տիրան, Արշակ, Պապ եւ Վարազդատ թագաւորներուն մասին ակնարկութիւն կը նկատէ· բայց Փաւստոսի ժամանակագրական աղիւսակէն ինչո՞ւ դուրս հանուած են Արշակ (Բ.), Վաղարշակ եւ Խոսրով Գ. թագաւորները։ Ընդունինք թէ Զ. Դպրութիւնը պարզապէս յաւելուած մըն է Փաւստոսի երեք Դպրութեանց (Die Anfänge,

S. 7.) ուստի եւ ամբողջութեան չի վերաբերիր· սակայն միտ դնելու է, որ "զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն" բառը քիչ վերջը եկող "զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց"ը կ'ուզէ հասկընալ: Երրորդ եւ չորրորդ ապացոյցները ընդհանրապէս նոյն են Հ. Կ. Տէր-Սահակեանի ապացոյցներուն հետ. եւ են՝ Փաւստոսի Ա. Գլխոյն "է ինչ մեր պատմութիւն" եւն խօսքը եւ Պրոկոպիոսի Գ. գրքին ծանօթ հատուածը. որոնցմով սակայն աւելի Փաւստոսի Ա. եւ Բ. Դպրութեանց գոյութիւնը կը ցուցուի քան թէ Անանունի Փաւստոսէ հեղինակուած ըլլալը: Պատճառն այն է, որ Է. դարու գրութեան մը հետ բոլորովին ի մի ձուլուած պատմութիւն մը Փաւստոսի Ա. պատմութեան հետ նոյնացընելու երաշխաւորիչ արտաքին կռուան մը չկայ: Ստոյգ է, Պրոկոպիոսի հատուածն ընդհանրապէս համաձայն է Անանունի բովանդակութեան. սակայն ասկից տակաւին չի հետեւիր երկուքին նոյնութիւնը: Վասն զի չէ՞ կրնար ըլլալ, որ մէկը Է. դարուն կամ Փաւստոսի պատմութենէն եւ կամ ինքնին իսկ անոր աղբիւրէն նոր մը բաղադրած ըլլայ: Մեր ըսածին ճշմարտութիւնը փորձով իսկ հաստատուած կը տեսնենք Պր. Ադոնցի վերոյիշեալ ուսումնասիրութեան մէջ: Ադոնց ալ երկուքին մէջ համաձայնութեան աղերս մը գտաւ, բայց անկից չկրցաւ այն հետեւութիւնն հանել, զոր կ'ուզեն հանել Յ. Թոփչեան եւ Հ. Կ. Տէր-Սահակեան:

Այժմ դիւրին է ըմբռնելը թէ յարգելի գիտնականներէս այսպիսի ապացոյցներով վաւերացուած տեսութիւն մը՝ ինչո՞ւ ընդհանուր համերաշխութեան արձագանգ մը չգտաւ գիտնական աշխարհի առջեւ։

Ուրիշ են մեր պատճառները։ Մանրաքննին հետազօտութեամբ կարդալով Անանունի երկու Դպրութիւնները տեսանք, որ անոնց մէջ ոսկեդարեան եւ ոչ-ոսկեդարեան հատուածներ կան. ահա այս եղաւ զմեզ այս տեսութեան մղող առաջին եւ գլխաւոր պատճառը, որուն հետ սերտիւ կապուած են միւսները։ Ուրեմն՝ մենք պիտի ապացուցանենք, որ Անանունի ինչ ինչ հատուածները, որոնք գրքին հազիւ կէսը կը գրաւեն, հատակտորներ են Ե. դարու մէջ գրուած Հայոց նախնական պատմութեան մը, որուն հեղինակն է ինքնին իսկ Փաւստոս[1]։

Բայց յառաջ քան մեր նիւթին անցնիլը՝ պատշաճ եւ մանաւանդ թէ կարեւոր է տեսնել թէ Փաւստոս իրօք գրած է այսպիսի պատմութիւն մը։

## Ա.

## Փաւստոսի Առաջին պատմութիւնը։

Թէ Փաւստոս գրած է նաեւ Հայոց նախնական պատմութիւն մը, արդէն մինչեւ ԺԹ. րդ

---

1 Անանունի խմբագրողին խնդիրը՝ ուսումնասիրութեանս մէջ անշօշափելի պիտի մնայ։

դարուն սկիզբները Վեննետիկի Մխիթարեան մեծարգոյ Հայրերուն գէթ մէկ մասէն ընդունուած էր. սակայն կարծեաց բազմապիսութիւնը հոս ալ երեւան ելաւ, այն տարբերութեամբ, որ հոս բանասէրները աւելի երկու իրարու հակընդդէմ խմբերու բաժնուեցան. որոնցմէ մին խնդրոյն նկատմամբ հաստատական, իսկ միւսը բացասական պատասխան կու տայ իբրեւ յենակէտ ունենալով այն չապացուցուած ենթադրութիւնը, թէ Փաւստոս իւր պատմութիւնը կը գրէ լոկ իբրեւ շարունակութիւն Ագաթանգեղեայ պատմութեան։ Վերջին կարծիքս՝ առաջին անգամ վճռական կերպով արտայայտողն եղած է Neumann. Das erste Buch dieser Geschichte, կ՚ըսէ Neumann, wird das dritte genannt, weil der Verfasser sein Werk als eine Fortsetzung des Agathangelus betrachtet wissen will.[1] Neumannի կարծեկից են Հ. Գաթըրճեան[2], Հ. Տաշեան[3] եւ քանի մը հոգի ի բաց առնելով՝ անցեալ դարուն վերջին կիսուն բանասէրները։ Neumannի կարծիքէն ըստ էութեան տարբեր չէ Գր. Խալաթեանցի տեսութիւնը, որուն համեմատ Փաւստոսի Գ—Զ.

---

1 Versuch einer Geschichte der armenischen Literatur. Leipzig 1836. S. 26.

2 "Պատարագամատոյցք Հայոց„ Վիեննա 1895, էջ 93։

3 "Փաւստոս Բուզանդ„ Մատենախօսութիւն, Հանդ. Ամս. 1890, էջ 68—70։

Դպրութիւնները Ղ. Փարպեցւոյ ժամանակ “Ա.—Դ. Պատմութիւն„ վերնագիրը ունէին[1]։ Բայց երկու խմբերէն ալ բացառութիւն կը կազմեն Էմին եւ Նորայր. ասոնց կարծիքները յայնմ իրարու հետ կը միաբանին, որ երկուքին ալ եզրակացման հիմնակէտն է Փաւստոսի պատմութեան “Բուզանդարան Պատմութիւնք„ վերնագիրը[2]։

Ստուգիւ մեզի համար պահ մը կարծես անըմբռնելի կը մնայ այս քննադատներուն բռնած ընթացքը, երբ կը մտածենք այն ապացոյցներուն վրայ, որոնք պայծառ եւ մեկին կերպով կը հաստատեն Փաւստոսի Հայոց Նախնական պատ-

---

1 “Ղազար Փարպեցի եւ գործք նորին„ Մոսկուա 1883, էջ 116։

Նոյնը անկախ Գր. Խալաթեանցէն (Հանդ. Ամս. 1902, էջ 190—191) յայտնած է նաեւ Ստ. Մալխասեանց. Zeitschrift für armenische Philologie I. S. 64—67.

2 Էմինի կարծիքն է թէ “Բուզանդարան„ բառին իմաստը կը ցուցընէ, որ Փաւստոս քանի մը ազգաց պատմութիւնք ամփոփած էր իւր գրութեան մէջ, որ երեք մասի կը բաժնուէր. Հայ թարգմանիչը առաջին երկու մասերը թողլով թարգմանած է միայն այն մասը, որ “Հայոց Պատմութիւնն„ էր. Collection des historiens de l’Arménie. Par Vict. Langlois. Paris. MDCCCLXVII, p. 205—206. Նորայրի կարծիքը ասկից այնու կը տարբերի, որ կ'ըսէ. “Բուզանդարան„ բառն եւ “պատմութիւնք„ յոգնակի ձեւն “կը ներեն ենթադրել թէ նախնաբար երկու կամ երեք զանազան Բուզանդացի մատենագրաց պատմութիւններ ամփոփեալ էին ի միում տփի . . ., եւ օտար ոմն հանած է այս տփէն միայն զԳ. զԴ. զԵ. եւ զԶ. Դպրութիւնս„ քննասէր Ա. էջ 21—22։

մութեան գոյութիւնը։ Սակայն՝ նկատելով որ Փաւստոսի պատմութեան խորհրդաւոր մթութիւնը եւ գլխաւորաբար ժամանակը այնպիսի մեծամեծ պատճառներ են, որոնք կրնան նոյն իսկ ամենամեծ գիտնականները մոլորցընել, կը ստիպուինք խոստովանելու թէ այս մեծ եւ միանգամայն բազմավաստակ քննադատները մեղադրելու ոչ դիտաւորութիւն եւ ոչ ալ իրաւունք կրնանք ունենալ։

Մեր բացած խորագիրը ցուցընելու համար առաջին ապացոյցը կ'առնունք ինքնին իսկ Փաւստոսի խօսքերէն։ "Ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ, կ'ըսէ Փաւստոս, եւ նորուն յելից եւ մարտիրոսութենէն մինչեւ ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի եւ իւրոյ հանգստեան եւ յառաքելասպանն Սանատրկոյ արքայէն (բնագիրը՝ արքայէն) մինչեւ յակամայ հնազանդելն հաւատոցն եւ ի նորուն հանգստեան արքային Տրդատայ, զանցեալ իրացն զառաջնոցն զվարսն լուացն եւ որ զնոցուն հակառակ ընդդիմակաց, այն ամենայն ի ձեռն այլոցն գրեցաւ։ Բայց եւ մեք ի մերում աստ եդաք փոքր ի շատէ ի կարգի պատմութեան, ոչ զանց արարեալ թողաք վասն պատշաճ իրաց կարգին։ Վասն զի է՛ ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է, եւ է՛ ինչ՝ որ վերջին է, իսկ որ միջին ինչ եղեւ, այն ի ձեռն այլոցն գրել գրեցաւ։ Բայց զի մի՛ ի միջի պատմութեանս մերոյ ընդհատ երեւեսցի, հուն մի նշանակեցաք, զոր օրինակ աղիւս մի կարգած ի մէջ որ-

մոյն շինուածոյ, ի կատարումն բովանդակութեան[1]։

Փաւստոսի պատմութեան սոյն հատուածը անոր ամենակարեւոր հատուածներէն մին է. ասով գլխաւորաբար կարելի է ճանչնալ թէ Փաւստոս իսկապէս ինչ է հայ պատմագիրներու կարգին մէջ։ Ընդհանրապէս մթին կը համարուի այս գլուխը (հմմտ. Հ. Տաշեան, անդ. էջ 70 եւ նոյնը՝ Հանդ. Ամս. 1905, էջ 163)։ Սակայն ասոր բովանդակութիւնը շատ պարզ է. մթին է անոր համար, որ ասկից այն իմաստը հանել կ'ուզուի, ինչ որ "Գ. Դպրութիւն" վերնագրին եւ Գլխոյս առաջին մասին ի միասին ըմբռնումը կուահել կու տայ, մինչդեռ յետագայ ընդգծուած տողերը կը ցուցնեն, որ խընդրոյն ծանրակէտը ուրիշ տեղ է։ Ահա Գլխոյն բառական թարգմանութիւնը։ "Թադէոս առաքելոյն քարոզութենէն եւ մարտիրոսութենէն մինչեւ Գրիգորի քարոզութիւնն ու մահը եւ (կամ՝) առաքելասպան Սանատրուկ թագաւորէն մինչեւ Տրդատ թագաւորին հաւատոց ակամայ հպատակութիւնն ու մահը հանդիպած նախնի քաջաց եւ բարեաց, ինչպէս նաեւ անոնց հակառակորդներուն պատմութիւնները՝ ամէնն ալ ուրիշներէն գրուեցան։ Այսու հանդերձ մենք ալ մեր պատմութեան մէջ համառօտիւ մը դրինք եւ չուզեցինք զանց առնուլ՝ մեր պատմութեան կարգը պահելու համար։ Վասն

---

1 Փաւստոսի Բուզանդացւոյ պատմութիւն Հայոց· Ս. Պետերբ. 1883· Գլ. Ա.։

զի մենք ունինք առաջին պատմութիւն մը եւ վերջին պատմութիւն մը (եւ կամ՝ մեր գրած պատմութիւնները՝ առաջինը եւ վերջինը են) իսկ միջինը ուրիշները գրեցին: Բայց որպէս զի մեր պատմութեան մէջ ընդհատութիւն չմտնէ՝ նման որմի շինուածքին մէջ եղած աղիւսակարգի մը՝ անոր բովանդակութեան ամբողջութեան համար նոյնը կարճառօտիւ նշանակեցինք»:

1. Փաւստոս չ'ըսեր թէ Ա. եւ Բ. Դպրութիւնները ուրիշները գրած են եւ ինքը անոնց իբրեւ շարունակութիւն կը յաւելու իւր Գ. — Զ. Դպրութիւնները, այլ թէ Թադէոսի եւ Գրիգորի ժամանակամիջոցին վրայ ուրիշները արդէն գրած ըլլալով՝ ինքը անոնց վրայէն համառօտիւ պիտի անցնի, ոչ թէ իբրեւ նախապատրաստութիւն իւր իսկ պատմութեան, այլ որպէս զի իւր պատմութեան մէջ ընդհատութիւն չմտնէ: Արդ ընդհատութիւնը կ'ենթադրէ յինքեան յառաջընթաց մը եւ հետեւորդ մը, զորոնք իրարու հետ միացընելու համար միջնօղակի մը պէտք կայ. ուրեմն մեր խնդրոյն մէջ այս միջնօղակն է Թադէոս-Գրիգորեան ժամանակամիջոցը: Փաւստոսի այս յայտարարութիւնը միայն բաւական է թէ Neumannի կարծեկիցներուն եւ թէ այն բանասիրաց կարծիքը իբրեւ անհիմն ցուցընելու, որոնք բոլոր խնդիրը “Բուզանդարան„ բառին իմաստով կ'ուզեն լուծել: Նորայր Բիւզանդացւոյ բառէս եզրակացուցածը շատ

բռնազբօսիկ եզրակացութիւն մըն է, ուստի եւ զայն այժմէն իսկ խնդրէն դուրս հանելու է։ Գալով Էմինի մեկնութեան՝ կ'ըսենք, որ եթէ Փաւստոսի Ա. եւ Բ. Դպրութիւնները ուրիշ ազգաց պատմութիւններ ըլլային, այն ատեն Փաւստոս պէտք չունէր ըսելու, թէ Թադէոս-Գրիգորեան ժամանակամիջոցը համառօտիւ մը պիտի յիշեմ, որպէս զի պատմութեանս մէջ ընդհատութիւն չմնէ. վասն զի այն ատեն Ա. եւ Բ. Դպրութիւնները իրենց օտար նիւթովը Գ—Զ. Դպրութիւններուն հետ պատմական ներքին կապակցութիւն մը չունենալով՝ ընդհատութեան ալ տեղի չկար։

2. Փաւստոս կը յաւելու. "վասն զի մեր գրած պատմութիւնները առաջինը եւ վերջինը են, իսկ միջինը ուրիշները գրեցին,,։ Որ է ըսել. Փաւստոսի կողմանէ Միջին պատմութեան համառօտիւ յիշուելուն պատճառն այն է, որ ինքը Հայոց Առաջին եւ Վերջին պատմութիւնները գրած ըլլալով՝ կ'ուզէ զանոնք Միջնոյն յիշատակութեամբը իրարու հետ միացընել: Գորդեան հանգուցին ծայրերը ահա այս փոքրիկ հատուածին մէջ են. իսկ Նախընթաց եւ հետեւորդ խօսքերը ասոր հանդէպ պարզապէս միջնորդական կամ երկրորդական նախադասութիւններ են։ Ըստ այսմ՝ չենք կրնար համամիտ ըլլալ Հ. Տաշեանի, որ Առաջին եւ Վերջին պատմութիւնները կամ լաւ եւս պատմական ժամանակաշրջանները կը բաղձայ ինքնին իսկ Փաւստոսի ներկայ Պատմութեան

մէջ փնտռել[1] վասն զի՝ քանի որ Փաւստոսի Միջին Պատմութիւն ըսածը Թադէոս-Գրիգորեան ժամանակաշրջանի պատմութիւնը միայն կրնայ հասկցուիլ, կը հետեւի, որ անոր Առաջին եւ Վերջին պատմութեանց նիւթը կը կազմէին Հայոց պատմութեան Նախաքրիստոնեան եւ Յետգրիգորեան ժամանակաշրջանները:

3. Փաւստոսի արեւելեան աւելաբանութիւնը մեզի ուրիշ ապացոյց մըն ալ կը մատուցանէ. իր ըսածը աւելի ըմբռնելի ընելու համար նմանութիւն մըն ալ կը գործածէ, որ միայն մեր մեկնութեան կը պատշաճի. “Նման որմի շինուածքին մէջ եղած աղիւսակարգի մը.„ որմի շինուածքը կը համապատասխանէ ինքնին իսկ Փաւստոսի Առաջին եւ Վերջին պատմութեանց, իսկ անոր մէջ եղած աղիւսակարգը, որ որմին երկու շերտերուն հիւսուածքները ամբողջի մը պիտի վերածէ, կը համապատասխանէ Միջին ժամանակաշրջանին Փաւստոսի կողմանէ համառօտ յիշուելուն։

Ցայժմ ըսուածներով կարծենք թէ գէթ անուղղակի կերպով նաեւ ցուցցած կ'ըլլանք, թէ ինչ ըսելու է Հ. Մէնէվիշեանի այն կարծեաց նկատմամբ, որուն համեմատ “վասն զի է ինչ մեր պատմութիւն„ եւն հատուածը իւր յաջորդ խօսքերով՝ իբրեւ ոչ հարազատ ծնունդ Փաւստոսի մտաց՝ անվաւերական համարելու է[2]։

---

1 “Հանդ. Ամս.„, 1905, էջ 163։

2 “Հանդէս Հայագիտութեան„ (= Zeitschrift für

եթէ նոյն իսկ ընդունինք, որ Փաւստոսի պատմութիւնը Ե. դարէն վերջը նոր խմբագրութեան ենթարկուած է, ինչպէս Ստ. Մալխասեան կը հաստատէ (Zeitschrift für armenische Philologie I. S. 67) եւ Գեր. Հ. Մատենախօսը գէթ չափով մը կ'ընդունի (անդ), չենք կրնար այս ենթադրութեան մէջ այնչափ յառաջանալ, որ գլխոյ մը համար կենդրոնական նշանակութիւն ունեցող հատուած մը ընդմիջարկեալ համարինք[1]։

Թէ խնդրոյ նիւթ եղող հատուածը Փաւստոսի մօտ հարազատ ծնունդն է, եւ թէ մեր՝ ամբողջ գլխէն հանած եզրակացութիւնը անոր ամենաբնական մեկնութիւնն է, կը վկայէ նաեւ Պրոկոպիոս իւր "Վասն շինութեանց„ Գ. գրքին մէջ։ Խնդրոյն առաւել լուսաւորութեան համար պիտի թարգմանենք սոյն հատուածը, պիտի թարգմանենք նաեւ նոյն հեղինակին "Վասն պարսկական պատերազմին„ Ա. գրքին մէջ եղած հայկական ծանօթ հատուածը. վասն զի մեր կարծիքով առաջնոյն աղբիւրը որոշելու համար

---

armenische Philologie). Մատենախօսութիւն. Հանդ. Ամս. 1902, էջ 168։

[1] Fr. Murad իւր Ararat und Masis (Heidelberg 1901, S. 78) գործին մէջ ամբողջ գլուխը յետամուտ կը համարի։ Այս մասին այսչափս միայն կ'ըսենք, որ յարգ. հեղինակը ինքն իրեն դէմ մեր ձեռքը ապացոյց կու տայ, երբ այս գլխոյն հետ գրքին գրեթէ կէսը եւ այն՝ Ե. դարու մէջ խմբագրուած կը յայտարարէ, վասն զի ոսկեդարեան եւ ոչ-ոսկեդարեան լեզուները քիչ մը զանազանել գիտցողին համար շատ տարօրինակ եւ անյաջող եզրակացութիւն մըն է այսպիսի դատաստան մը այնպիսի գրքի մը վրայ, որ ոսկեդարեան է։

*անհրաժեշտ հարկաւոր է երկրորդին ծանօթութիւնը։*

Վասն Պարսկական պատերազմին Ա. Ճ։

*"Այլ Պատմութիւն Հայոց ասէ թէ զօրութիւն այնր օրինաց, որ ի վերայ Անյուշ բերդին է, լուծեալ եղեւ ի Պարսից օրինակաւս այսուիկ։*

*Երեսուն եւ երկու ամս անհնարին իմն* (ἀκήρυκτος) *պատերազմ էր երբեմն Պարսից ընդ Հայս, յայնմ ժամանակի թագաւորէր ի վերայ Պարսից Բակուր եւ ի վերայ Հայոց Արշակ յազգէն արշակունեաց։ Թէպէտ եւ զերկոսին կողմանսն եւս նեղէր տագնապէր երկարութիւն պատերազմին, այլ քան զՊարսիկս առաւել ի նեղ անցեալ էր աշխարհն Հայոց։ Այնչափ չվստահէին իրերաց, մինչ զի ոչ ոք ի նոցանէ համարձակէր դեսպանագնաց առ թշնամին լինել։ Բայց զայնու ժամանակաւ դէպ լինէր Պարսից պատերազմել ընդդէմ այլոց բարբարոսաց, որ ոչինչ հեռի ի սահմանացն Հայոց բնակէին։ Յայնժամ Հայք զի զիւրեանց առ Պարսիկս զբարեկամութիւնն եւ զցանկութիւն՝ խաղաղութիւն ընդ նոսին առնելոյ՝ ցուցանիցեն. հաստատեալ սահմանեցին խաղալ, գնալ ի սահմանս բարբարոսաց։ Ապա ուրեմն յայտ արարեալ զխորհուրդ իւրեանց Պարսից՝ յանկարծակի յեղակարծումն ժամանակի յարձակէին ի վերայ բարբարոսաց եւ անխտիր զամենայն հասակ՝ զայր եւ զկին, առ հասարակ ընդ սուր հանեալ կոտորէին։*

*Զայս իբրեւ լուաւ Բակուր արքայ, կարի ուրախ եղեւ եւ առաքեաց զոմանս ի բարեկամաց իւրոց ուխտիւ բարեկամութեան կոչել զԱրշակ առ ինքն ի ժողով հաշտութեան խաղաղութեան։ Իբրեւ գնաց Արշակ արքայ, մեծափառ մեծարանօք եւ սիրով ընկալաւ զնա Բակուր, եւ որպէս զեղբայր իւր եւ զհաւասար՝ այնպէս կալաւ զնա։ Ապա ստի-*

պետալ բռնադատեաց զնա երդնուլ զերդումն հաւատարմութեան, երդուեալ եւ ինքն՝ հաստատեցին, զի յայնմ հետէ Պարսիկք եւ Հայք ի մէջ իւրեանց պահեսցեն զփոփոխ բարեկամութիւն եւ սէր եւ զինակից միմեանց լինիցին, յորժամ պատերազմ ինչ առնել ի միջի կայցէ։ Ապա արձակեաց զնա ի Հայս։

Յետ ոչ բազում ժամանակաց ազդ առնէին Բակուրայ, եթէ նոր ինչ մեքենայս մեքենայէ Արշակ ընդդէմ քո։ Իսկ Բակուր պատրեալ ի բանիցն՝ կարեւոր ինչ գործոց պատճառանաւ զնա ի խորհուրդ հրաւիրէր։ Զյապաղէր Արշակ, զի ունէր ընդ իւր հայ մարտիկս եւ զՎասակ, որ վասն արութեան եւ քաջութեան եւ առանձին իմն իմաստութեան եւ սպարապետ բանակին եւ խորհրդական արքունական ժողովոյն կարգեալ էր։ Յայնժամ իսկ եւ իսկ զերկոսին եւս՝ զԱրշակ եւ զՎասակ, դառն բանիւք նախատէր Բակուր, կշտամբեալ յերեսն հարկանէր զարհամարհութիւն երդմանն, զոր հազիւ թէ երդուեալ էին, անդէն իսկ եւ իսկ ի բաց կալ ի նմանէ խորհէին։ Ժխտել ժխտէր Արշակ մեծաւ հաստատութեամբ՝ զամբաստանութիւնն, հանդերձ այսու ամենայնիւ անդէն ի սկզբանն տայր զնոսա ի պահեստ։

Ապա հարց եւ քննին առնէր, խնդրէր, հարցանէր զմոգս թէ զի՛նչ ինչ վճիռ հատանել պարտ իցէ զնոցանէ։ Իսկ մոգքն, քանզի անիրաւ իմն է, ասէին, դատապարտել զայնոսիկ, որք եւ զոճիրն յանձանց ի բաց քերէին եւ ոչ յայտնապէս դաշնակից նոցա երեւէին, հնարս հնարեցան, որով ստիպեսցի Արշակ անձամբ զանձն դատապարտ առնել։ Հրաման տային հող հարկանել ի յատակն արքունական խորանին, զկէսն առեալ յերկրէն Պարսից եւ զկէսն ի Հայոց։ Կատարեաց թագաւորն զոր ինչ հրամայեցինն։ Յայնժամ մոգք կախարդեալ զխորանն, ասեն ցթագաւորն պարտ է քեզ

յայնմ ի նմին իսկ խորանի այսր անդր ճեմել ընդ Արշակայ եւ ճառ առեալ խօսել զսուտ երդմանէ եւ զմիաբանութենէն։ Այլ հարկ է զի մեք եւս առընթեր լիցուք անդէն ի խօսս, զի վկայք լինիցիմք ամենայն բանիցն, որք յերկոցունց կողմանցն լինիցին։ Յայնժամ Բակուր ետ ածել զԱրշակ ի խորանն եւ ինքն երթեւեկս առեալ ճեմել սկսանէր ընդ նմա ընդ խորանն եւ ստիպէր հարցանէր թէ ընդէ՞ր ընդդէմ հաւատարմութեան ուխտին փորձէիր յանհնարին աղէտս վտանգի կործանել ե՛ւ զՊարսիկս ե՛ւ զՀայս։ Ցուրասատ յիրացն լինէր Արշակ եւ մեծամեծ ուխտիւք զանձն իւր իբրեւ զհաւատարիմ ծառայ Բակուրայ խոստովանէր, ցորչափ ժամանակս ի պարսիկ հողոյն վերայ էին եւ խօսեցան։ Այլ այն ինչ ընդ մէջ բանիցն ի միջոց խորանին հատանէր եւ զհայաստակն կոխել սկսանէր, անդէն առժամայն՝ չգիտեմ յորպիսի՛ զօրութենէ բռնադատեալ զնոյն բանսն ի ժպրհութիւն ամբարտաւանութեան շրջէր եւ ահագին իմն սպառնալիս սպառնայր Բակուրայ, եւ պարսիկ որերոյն, յայտ արարեալ թէ ոչ երբեք մոռանալոց է զթշնամանսն, զորս հասուցին, վրէժս ընդ նոցա հատուցանիցէ վաղվաղակի, յորժամ տէր իւրոյ անձինն լինիցի։ Այսպէս ցորչափ ժամանակս թէ ի հայ հողոյն վերայ էին, զայսպիսիս բարբառէր դազանացեալ վարազացեալ մինչեւ անդրէն յետս դարձեալ ի պարսիկ հողն մտանէր։ Քանզի աստէն նոյնպէս յայլ ձայն շրջէր, զպաղատանս ծառայի ի ձեռն առեալ աղիողորմ ձայնիւ բանս առ Բակուր բարբառէր։ Եւ յորժամ ի հայ հողոյն վերայ հասանէր, դարձեալ ի նոյն սպառնալիս դառնայր, այսպէս ստէպ ստէպ ընդ երկոսին կողմանսն եւս շրջեալ զոր ինչ ունէր ի սրտի իւրում զամենայն յայտաքս թափեաց։ Ապա ուրեմն դատապարտեցին զնա մոգք իբրեւ զուխտանենգ եւ զուխտադրուժ։ Յայնժամ հրաման տայր Բակուր հանել

զմորթն Վասակայ եւ տիկ արարեալ լնուլ խոտով եւ ապա կախել զբարձրաբերձ ծառոյ իմեքէ, իսկ զԱրշակ խաղաղուցանել յԱնյուշ բերդն, զի այնպէս իմն համարէր թէ չունի ինչ իրաւունս զայր ոք թագաւոր արեանն մահուամբ յարեւէ արկանել։

Ի գալ միւսոյ ամին՝ այր մի Հայացի ի մտերիմ բարեկամացն Արշակայ եւ ի թուոյ այնոցիկ, որք զնորին զհետ գնացեալ էին ի Պարսս, խաղաց գնաց ընդ Պարսիկս ի պատերազմ զոր մղելոցն էին ընդդէմ բարբարոսաց։ Եւ քանզի առաջի աչաց իսկ Բակուրայ արքայի մեծամեծ քաջութիւնս գործեաց եւ պատճառք Պարսից յաղթութեանն եղեւ, յետոյ ուրեմն կոչեցեալ առ ինքն, ասէ ցնա թագաւորն, խնդրեա՛ց ինչ յինէն, զի՛նչ եւ խնդրեսցես, տա՛ց եւ ոչ արգելից։ Իսկ նա զայս ինչ միայն խնդրեաց, տացի ինձ, ասէ, հրաման, զի երթայց ծառայեցից Տեառն իմում Արշակայ մի օր ճիշտ, որպէս եւ հաճոյ իմում կամացն իցէ։ Որչափ զարմանաց՝ այնչափ ծանր էր թագաւորին հարկաւ լուծանել զայնչափ հնագոյն զօրէնսն, այլ զի մի՛ զխոստմամբն անցանիցէ, հաճեալ հաւանեցաւ ընդ խնդիրն։ Յայնժամ զթագաւորական հրովարտակն ի ձեռին՝ մտեալ յԱնյուշ բերդն ողջոյն տայր Տեառն իւրում Արշակայ։ Անդէն գիրկս արկանէին զմիմեամբք եւ ի քաղցր յարտասուս հարեալ զանցսն նորա ողբային, մինչ զի հազիւ հազ թէ կարացին քակել ի միմեանց։ Եւ իբրեւ յարտասուելոյ անտի խոնջեալ վաստակեալ սակաւիկ ինչ սփոփէին, անդէն յարուցեալ լոգացոյց հայն զԱրշակ, զամենայն ինչ ճշդիւ կտակաւ յարդարեալ եւ զգեցուցեալ նմա պատմուճանս թագաւորականս, բազմեցուցանէր զնա ի բազմականին։ Յայնժամ Արշակ արքայ ըստ առաջին սովորութեանն ընդունէր յընթրիս, որ անդն կային. յայսմ ի սմին ընթրիս ի վերայ բաժակացն բազում ինչ բանք ի միջի անցանէին, որովք զուարճանայր զուարթա-

նայր Արշակ, եւ այլ բազում ինչ եկն ի միջի, որք կարի իսկ ուրախ առնէին զնա։ Մեծ էր արդարեւ քաղցրութիւնն, զոր ճաշակէին խօսակից ընդ միմեանս լինել՝ մինչ զի մինչեւ ցգիշերն երկարեն ձգեն զխնճոյսն։ Հազիւ մեկնէին ի միմեանց մեծաշուք ընթրեացն հեշտութեամբ լցեալք մըղփացեալք։ Ապա ուրեմն՝ ասեն թէ իցէ ասացեալ Արշակայ, ածէ՞ք ինչ երբեք զմտաւ թէ յետ զայսպիսի եւ զայսչափ քաղցր եւ ցանկալի օր ընդ ցանկալոյն ի մէջ մահկանացուացն անցուցանելոյ տակաւին կամաւ կրիցեմ զվիշտս տառապանաց կենաց իմոց։ Զայս ասացեալ՝ զդանակն, զոր կամօք ի սեղանոյ անտի առեալ էր, եհար ի սրտի իւրում եւ անդէն սատակեցաւ։ Արդ որ ինչ ասացաք զելիցն Արշակայ արքայի եւ թէ յայնմ ի նմին իսկ ժամանակի ընդդէմ օրինացն գործեցաւ որ յԱնյուշ բերդէն է, բովանդակեալ գտանի ի Հայոց պատմութեան (ἡ τῶν Ἀρμενίων συγγραφή), զոր ի վեր անդր յիշեցաք։ Procopius Vol. I. 5. Corpus Scriptorum historiae Byzantinae. Pars II. Bonnae 1833.

Վասն շինութեանց. Գ. Ա։

Թէ էր երբեմն թագաւոր Հայոց ի նմին ազգէ՝ հաստատեալ ցուցանէ հնոցն պատմութիւն։ Այլ իբրեւ Աղեքսանդր Մակեդոնացի զթագաւորն Պարսից կործանէր, նուաճել նուաճէին Պարսիկք, սակայն Պարթեւք ապստամբեալ ի բաց կացին ի ծառայութենէ Մակեդոնացւոց եւ պարտեալ եւ ի բաց վտարեալ զնոսա տարածանէին զիշխանութիւն իւրեանց մինչեւ ցգետն Դկղատ։ Հանդարտէին Պարսիկք ընդ իշխանութեամբ նոցա ամս հինգհարիւր մինչեւ ցժամանակն, յորում թագաւորէր ի վերայ Հռովմէացւոց Աղեքսանդր որդի Մամեայ։ Ցայնմ ժամանակի, որպէս ասէ իսկ Պատմութիւնն Հայոց, մի ոմն ի թա-

զաւորացն Պարթեւաց թագաւորեցոյց զԱրշակ զեղբայր իւր ի վերայ աշխարհին Հայոց։ Այս մի՛ ոք կարծիցէ թէ Արշակունիք ի Հայոց անտի սերեալ իցեն։ Սոքա զամս հինգհարիւր խաղաղութեամբ պահեցին զեղբայրութիւն ազգատոհմին իւրեանց։
Procopius, Vol. III. De Aedificiis, III. 1.

Առ այժմ մեզի համար անտարբեր խնդիր է թէ Պրոկոպիոսի առջեւը եղած "Հայոց Պատմութիւն„ը յունարէն էր թէ հայերէն. մեզի համար կարեւորն ա՛յն է, որ ինչ որ Փաւստոս անկեղծօրէն կը խոստովանի, նոյնը հոս Պրոկոպիոս անվիճելիօրէն կը հաստատէ։ Առաջին կտորին Փաւստոսէն ըլլալուն վրայ՝ ակներեւ ըլլալուն համար, չեմ կարծեր թէ տարակոյս կարելի ըլլայ հանել. ուրեմն խնդիրը գլխաւորաբար երկրորդին վրա՛յ է։ Սակայն երկրորդն ալ չի կրնար տարակուսի տակ ձգուիլ, վասն զի Պրոկոպիոս թէ՛ առաջին եւ թէ՛ երկրորդ կտորին մէջ զմեզ կը խաւրէ միեւնոյն աղբիւրին՝ այսինքն Հայոց Պատմութեան մը. արդ՝ թէ Պրոկոպիոս Հայոց Պատմութիւն ըսելով չի հասկընար ընդհանրապէս Հայոց Պատմութիւն, այլ գրուած յատուկ պատմութիւն մը՝ հետեւեալ պատճառներէն կը տեսնուի։ 1. Պրոկոպիոս առաջին կտորին նախընթաց „ἡ τῶν ᾿Αρμενίων ἱστορία“ին իմաստը աւելի կ՚որոշէ, երբ ամենէն վերջը անոր տեղ կը գործածէ „ἡ τῶν ᾿Αρμενίων συγγραφή“ որ ինչպէս բացայայտ է, գրուած յատուկ պատմութիւն մը միայն կրնայ նշանակել։ 2. Առանց այս կէտին ալ Պրոկոպիոսի խօսքերը յինքեան ուրիշ մեկնութիւն մը

բացարձակապէս կը մերժեն„ ἅπαξ δὲ ἡ τῶν Ἀρμενίων ἱστορία φησί (De Bello Persico, I. 5). — τὰ μὲν οὖχ κατὰ τοῦτον δὴ τὸν Ἀρσάκην ἡ τῶν Ἀρμενίων συγγραφὴ λέγει ταύτῃ ἧπερ ἐρρήθη, κεχωρηκέναι καὶ τὸν νόμον τότε ἀμφὶ τῷ τῆς λήθης φρουρίῳ λελύσθαι (անդ). — ὥσπερ ἡ τῶν Ἀρμενίων ἱστορία φησί (De Aedificiis III, 1). ասոնք միայն գրուած պատմութիւն մը կրնան ակնարկել։ 3. Դրական ուրիշ զօրաւոր ապացոյց մ'ալ ունինք. Փարպեցւոյ արժանահաւատ վկայութեան համաձայն Փաւստոսի պատմութիւնը Ե. դարուն մէջ կ'անուանուէր Հայոց Պատմութիւն = τῶν Ἀρμενίων ἱστορία։ Փարպեցւոյ այս վկայութեամբը ոչ միայն Պրոկոպիոսի հատուածներուն աղբեր նոյնութիւնը կը հաստատուի, այլ նաեւ այն թէ Բիւզանդացի մատենագիրը ἡ τῶν Ἀρμενίων ἱστορία կը գործածէ իբրեւ յատուկ անուն Փաւստոսի Պատմութեան։

Հ. Գաթրճեան կը կարծէ թէ վերջին հատուածին Արշակով՝ Պրոկոպիոս Խոսրով Ա. Տրդատին (Գ.) հայրը կ'ուզէ մատնանիշ ընել (Տիեզ. պատմ. Բ. Հտ. էջ 179)։ Միայն թէ՝ ինչպէս լաւ դիտած է արդէն Հ. Տաշեան (Հանդ. Ամս. 1890, էջ 89) յաջորդ խօսքերը այսպիսի մեկնութիւն մը անկարելի կ'ընեն։ Այսպիսի մեկնութիւն մը՝ նոյն իսկ առանց յաջորդ խօսքերը նկատողութեան առնելու՝ անհնար է ընդունիլ. վասն զի՝ "Ցայնմ ժամանակի, մի ոմն ի թագաւորացն Պարթեւաց թագաւորեցոյց„ եւն

խօսքին "Ցայնմ ժամանակին„ այս պարագային պիտի նշանակէր ճիշտ այն ժամանակը, յորում Պարթեւաց Պետութիւնը կործանեցաւ։

Պրոկոպիոս հոս կը խօսի առաջին Հայ-արշակունի Թագաւորին վրայ. եւ անոր ժամանակն ալ մերձաւորապէս կ'որոշէ, երբ կ'ըսէ. "Սոքա զամս հինգհարիւր խաղաղութեամբ պահեցին զեղբայրութիւն ազգատոհմին։„ Ուստի եւ յառաջ՝ եւ նաեւ Քրիստոսէն յառաջ երթալու է. այն ատեն՝ Պրոկոպիոս իւր այս հատուածին մէջ կու գայ կը միանայ Խորենացւոյ եւ Անանունի հետ, այս տարբերութեամբ որ անոր "Արշակ„ը Խորենացւոյ քով կ'ըլլայ "Վաղարշակ„, իսկ Անանունի քով նոյնպէս "Արշակ„։ Ընթերցողին կը ձգենք փաւստոսի Ա. Գլխուն եւ այս եզրակացութեան համեմատութիւնը[1]։

Կարծենք թէ այլ եւս պարզ է թէ ինչու փաւստոսի Պատմութիւնը "Գ. Դպրութիւն„ով կը սկսի։ փաւստոսի "Առաջին Պատմութիւնը„ կը պակսի. ահա այս է աւոր միակ պատճառը։ Ի հարկէ Եղիշէ Մատաթեան իւր "փաւստոս Բիւզանդ„ին մէջ՝ այն կարծիքը յայտնած է թէ փաւստոս իւր Հայոց նախնական պատմութիւնն ալ այս "Գ. Դպրութեան„ տակ ամփոփած էր (Վիեննա 1890. էջ 22—25), բայց ապահով ենք, որ Ե. Մ այս կարծեաց պիտի չյանգէր, եթէ միտ դնէր, որ փաւստոս

---

[1] Հմմտ. այս մասին նաեւ Ն. Ադոնց. Начальная исторія Арменіи. էջ 30—32. եւ Ց. Թոփչեան. Արարատ 1901. էջ 525. Die Anfänge, S. 11—12.

Առաջին պատմութիւն ըսելով կը հասկընայ Գիրք մը ճիշտ այնպէս, ինչպիսի է վերջին պատմութիւնը։

Մեր առջեւը դժուարութիւն մը կը հանեն Գր. Խալաթեանց եւ Ստ. Մալխասեանց, որ է փարպեցւոյ այսպիսի գրութեան մը գոյութեան տգիտութիւնը եւ անոր կողմանէ փաւստոսի "Դ. Դպրութեան„ Բ. Պատմութիւն յորջորջումը։ Սակայն այս դժուարութիւնը կը մնայ լոկ դժուարութիւն, փաստի ոյժ չունի բնաւ. վասն զի Փարպեցին Փաւստոսի ոչ անձին եւ ոչ իսկ գրութեան վրայ իրական ծանօթութիւն ունի. ինչ որ կ՚ըսէ անոր անձին եւ գրութեան մասին, լոկ ենթադրութենէ անդին չեն անցնիր։ Հետեւաբար որովհետեւ փարպեցին փաւստոսի "Դ. Դպրութիւնը, Բ. Պատմութիւն կ՚անուանէ, ասկից փաւստոսի "Գ. Դպրութեան„ Ա. Պատմութիւն եղած ըլլալը չի հետեւիր։ Փարպեցւոյ Փաւստոսի մասին տուած տեղեկութեանց այն աչքով նայելու է, որով՝ սովոր ենք նայիլ անոր Ագաթանգեղեայ մասին տուածներուն. ինչպէս Հ. Տաշեան կը ցուցընէ (Հանդ. Ամս. 1890, էջ 150) ներկայ Ագաթանգեղոս 450—460 ի միջոցին գրուած է, եւ սակայն եթէ Փարպեցւոյ Ագաթանգեղեայ մասին ըսածներուն ճշգրտօրէն հետեւիլ ուզէինք, ստիպուած պիտի ընդունէինք թէ ներկայ Ագաթանգեղոսը խմբագրութիւն չէ. մինչդեռ նոյն Մեծ. Հայրը եւ ուրիշները անոր խմբագրութիւն ըլլալը բաւականէն աւելի ապացուցած են։

Այս ըսուածներէն եթէ կարելի է հետեւութիւն մը հանել, ա՛յն ալ այս է. Փաւստոսի առաջին Պատմութիւնը՝ այն ատեն երկրորդէն արդէն բաժնուած էր։ Այս հետեւութիւնը բնաւ իսկ զարմանալի եւ տարօրինակ պիտի չերեւայ անոնց, որոնց ծանօթ են մեր ազգին Ե. դարու գլխաւորաբար վերջին կէսին քաղաքական, եկեղեցական եւ մատենագրական պատմութիւնները։ Ղազար այնպիսի ժամանակ մը կ՚ապրէր, որ թէեւ Մաշթոցներու եւ Սահակներու ժամանակէն շատ հեռու չէր, սակայն կրօնական եւ քաղաքական անընդհատ պատերազմներու պատճառաւ, այնչափ փոխուած էր, որ կարծես անոր հետ առնչութիւն մը չունէր։ 50 տարուան մատենագրական անշարժութիւնը միայն՝ շատ բան մեր առջեւ կրնայ պարզել։ Այսպիսի աղետալից պարագաներու մէջ ո՛վ գիտէ ինչ անցքերու հանդիպեցաւ Փաւստոսի Առաջին Պատմութիւնը, որ Ղազար իւր ունեցած Ձեռագրին մէջ չգտաւ....։

Սակայն իրը ուրիշ տեսակէտով ալ կրնանք նկատել. կարելի չէ՞, որ հայ մատենագիրը անձամբ բաժնած ըլլայ երկու Պատմութիւնները։ Այս կէտը շատ հաւանականութիւն կը ստանայ, եթէ մտադրութեամբ ընթեռնունք Փաւստոսի “Նախագիտելին„ եւ Ա. Գլուխը՝ առանց սակայն զանց առնելու անոր վերնագիրը։

Ինչո՛ւ Փաւստոս Գ—Զ Դպրութեանց համար առանձին յառաջաբան մը գրած է, ինչո՛ւ այս յառաջաբանը Ա. Գլխոյն բովանդակութեան

չի համաձայնիր եւ կամ՝ ինչպէս “Գ. Դպրութիւն„ վերնագրին տակ “Սկիզբն„ եւ “Ա. Գլուխ„ բառերն կրնան կենալ. ասոնք վերջին տեսակէտով մտադրութեան շատ արժանի կէտեր են, որոնց մասին սակայն ուրիշ առթիւ։

Ստոյգ է, Փաւստոսի Պատմութեան Նախնականը՝ ինչպէս յետոյ պիտի ցուցընենք, ուրիշ լեզուաւ ըլլալուն՝ մեր ցայժմ ըսածները այնչափ վճռական չեն, որ կարենանք ստուգապէս եզրակացընել թէ Փարպեցւոյ ժամանակ անոր Առաջին Պատմութիւնը հայերէն լեզուաւ կար եւ Փարպեցւոյ աչքէն վրիպած է։ Սակայն ինչ որ ցայժմ ըսուածներով չենք կրնար հաստատել, Անանունը հաստատել պիտի տայ։

## Բ.

### Փաւստոսի Ա. Պատմութեան հատակոտորները Անանունի մէջ։

Գր. Խալաթեանց[1] եւ գրեթէ բոլոր Անանունի վրայ խօսող եւրոպացի հայագէտները իրենց քննադատութեանց մէջ միայն Ա. Դպրութիւնը նկատողութեան առած են, ըսելով որ Բ. Դպրութիւնը՝ ինչպէս վերնագիրը արդէն կը ցուցընէ, Խորենացւոյ եւ Ասողկայ ժամանակագրութիւններէն քաղուած ինքնուրոյն գրութիւն մըն է։ Ըստ իս յարգելի գիտնականներուն կարծիքը լուրջ քննութեան մը արդիւնք չէ։ Երկուքն ալ ժամանակին իրարմէ

[1] Армянскій Эпосъ. էջ 58։

անկախ, ինքնուրոյն գործեր եղած կրնան ըլլալ, բայց ոչ ներկայ ձեւին մէջ, վասն զի նախ՝ անհիմն է ըսելը թէ Խորենացիէն եւ Ասողիկէն քաղուածոյք մըն է Բ. Դպրութիւնը. մեր համեմատութիւնները ճիշտ հակառակը կը հաստատեն[1]. երկրորդ՝ անոր մէջ եղած Մամիկոնեանց պատմութիւնը՝ նկատելով թէ՛ լեզուն եւ թէ՛ ամբողջին մէջ բռնած անկապակից դիրքը, ցայ-

---

[1] Այսպէս՝ Բ. Դպրութեան Մամիկոնեանց ծագման պատմութիւնը Խորենացւոյ պատմածէն տարբեր է. — Բ. Դպրութեան համաձայն՝ Պարթեւաց Արշակ Ա. կը թագաւորէ 57 տարի, Արտաւան 36, ըստ Խորենացւոյ Արշակ Ա. 31 եւ Արտաւան 31. — առաջնոյն համեմատ՝ Կարոս Հայոց Խոսրով Մեծին դէմ պատերազմի կ'ելլէ եւ ճակատի մէջ կը մեռնի, երկրորդին համեմատ Պարսից դէմ կ'ելլէ եւ յաղթութեամբ Հռովմ կը դառնայ. — առաջնոյն համեմատ Տիրանի վերջին տարիները Պարսից թագաւորն էր Ներսէս որդի Շապհոյ եւ Հռովմէացւոց՝ Կոստանդիոս, մինչդեռ Խորենացւոյ համաձայն Պարսից՝ Շապուհ, որդի Ներսեհի, եւ Հռովմէացւոց՝ Յուլիանոս։ Չի կրնար նաեւ Ասողկէն քաղուածոյք ըլլալ այս Բ. Դպրութիւնը. թողունք որ երկուքը իրարու հետ համեմատողը յայտնապէս կը տեսնէ թէ բանաքաղողը Ասողիկն է եւ ոչ թէ Բ. Դպրութիւնը (Հմմտ. նաեւ Ստ. Մալխասեանց Սեբէոսի պատմութիւնը եւ Խորենացի. էջ 14, 21–53, միայն թէ Ստ. Մալխասեանի Բ. Դպրութեան հեղինակին մասին ըսածներուն համամիտ չենք) Ե. դարէն սկսեալ երկուքին ժամանակագրութեանց մէջ համաձայնութիւն չըլլալէն զատ՝ Բ. Դպրութիւնը այնպիսի կայսրներ ալ կը ստեղծէ, որոնք Ասողկայ բոլորովին անծանօթ են։ Բաց աստի եթէ Բ. Դպրութեան հեղինակը իւր առջեւը ունէր զԱսողիկ, ինչո՞ւ մինչեւ 652 կը հասցնէ իւր ժամանակագրութիւնը. հնարաւո՞ր է ընդունիլ թէ ժամանակագրին նպատակն եղած ըլլայ հասցնել իւր ժամանակագրութիւնը մինչեւ Պարսից թագաւորութեան կործանումը, երբ հայ պատմագրաց քով նման սովորութեան մը բնաւ չենք հանդիպիր։

տուն ապացոյց մըն է թէ Նոր խմբագրի մը ձեռքով կազմուած միակ Անանուն մը ունինք առջեւնիս, Անանուն մը սակայն՝ որ նոյն իսկ իր այս խեղճ ձեւին մէջ, շա՛տ աւելի հետաքրքրական եւ նուիրական է, քան թէ Խորենացւոյ պատմութիւնը։ Ն. Մառ եւ Գր. Խալաթեանց (հմմտ. վերը էջ 3—4) իրաւունք ունէին, երբ կ՚ըսէին թէ Անանունը այսօր մեզի կը ներկայանայ գլխաւոր աղբիւրը Խորենացւոյ Պատմութեան. աղբիւր մը կիսով չափ գրուած ա՛յն մատենագրէն, որուն գոյութեան պատշաճ իրաւունքը յափշտակելու մէջ՝ որչափ կ՚երեւայ, քաջասրտութիւն եւ ճարտարութիւն չէր պակսեր մեր ծերունի թարգմանիչ-պատմագրին։

Թերեւս գտնուին բանասէրներ, որոնք ոսկեդարեան գրականութեան ժամանակաշրջանին մասին տակաւին անորոշութեան մէջ ըլլալով, մեզմէ՝ Անանունի մէջէն Փաւստոսի Ա. Պատմութեան հատակոտորները մատնացոյց ընելէն յառաջ, զա՛յն ապացուցանելը պահանջեն։ Թէ այսպիսինները իսկապէս բանասէր անուանելու՞ է, խնդիր մըն է, զոր լռութեան կը յանձնենք։ Ի հարկէ մեր ապացոյցներէն գէթ շատերը անոնց համար ա՛յն զօրութիւնը պիտի չունենան, ինչ որ կը սպասուի, այսու հանդերձ թէ՛ ազգային եւ թէ՛ ոչ-ազգային ամենանշանաւոր հայկաբան-լեզուագէտներէ իբրեւ յայտ յանդիման ընդունուած իրողութիւն մը վերստին ապացուցանելու սկսելով՝ ինք զինքնիս ծիծաղելի չընելու համար, կը հրաժարինք նման ձեռնարկութենէ

մը[1], եւ կ՚անցնինք գրութեանս բուն նպատակին ։

Արդ ըստ իս ոսկեդարեան են 1. Անանունի "Արդ Հայելով ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի„ Հատուածէն սկսեալ՝ ի բաց թողլով "Յունարէն դպրութեամբ„ էն վերջը եկող երկու տողերը, որոնց օտար տարր ըլլալը՝ Հատուածին մէջ բռնած դիրքէն իսկ կրնայ իմացուիլ, մինչեւ յաջորդ Հատուածին վերջը։ "Հայելով„ ձեւը դասական մատենագրութեան խորթ ըլլալով՝ միտք չունինք բնաւ պաշտպանելու, միայն թէ մտադիր կ՚ընենք, որ Փաւստոսի քով միայն՝ քերականական նոյն ձեւը՝ 10 անգամէն աւելի կու գայ. օր. Համար. "Քրիստոսի բանաւոր խաշանցն հովուելով„ էջ 26. — "խրատելով„ (անդ). — եւ ինքն կայր քաջութեամբ ունելով զճակատուն տեղի„ էջ 124. — "շրջէր ճեմելով„ էջ՝ 142 եւն։ 2. Ոսկեդարեան են նոյնպէս "Արդ՝ այս է Հայկն՝ որ ծնաւ զԱրամանեակ„ (էջ 2) Հատուածէն՝ ի բաց թողլով նոյնպէս "Քանզի զայն ճառէ ժամանակագիրն՝ այդպէս որպէս առաջիկայ„ (էջ 6) խօսքը, մինչեւ Հայ եւ պարթեւ թագաւորաց ցանկը. այս

1 Ոսկեդարեան լեզուին ժամանակին, նկարագրին, եւ յատկութեանց մասին հետաքրքրուողը կրնայ կարդալ. Հ. Մ. Գարագաշեան. "Նկարագիր Ուսմանց„, Վիեննա 1845, էջ 25–46։ Նոյնը՝ "Ճաշակ Հայերէն լեզուի„ Պոլիս, 1886–1888։ Հ. Թ. Թոռնեան. Հատընտիր Ա. եւ Բ. Հտ. Վիեննա։ Նոյնպէս Հ. Գ. Գալեմքեարեան, "Ոսկեդարեան եւ ոչ-ոսկեդարեան Հայերէնները„. Հանդ. Ամս. 1903, էջ 257–272։ Հ. Գ. Մէնէվիշեան, "Ոսկեդարեան Հայերէնի խնդիրը„ Հանդ. Ամս. 1903, էջ 225–230։

ցանկին մասին ուսումնասիրութեանս ետեւը պիտի խօսինք։ 3. Գալով Բ. Դպրութեան՝ անոր մէջէն հանելու է միայն Մամիկոնեանց ազգաբանութիւնը, միւսը ամբողջապէս ուրիշ գործ է։

Այս հատակոտորներն ոսկեդարեան համարելուս պատճառն այն է, որ ամբողջ գրութեան մէջ լեզուական այնպիսի առանձնայատուկ նկարագիր մ'ունին, որ միայն ոսկեդարեան լեզուին կը պատշաճի։ Ասոնց մէջ չկայ հելլենաբանութեան ոչ բարդութեանց եւ ոչ ալ շարադասութեանց ձեւերը. բառամթերքը կամ համաբարբառը ընդհանրապէս համապատասխան է դասական լեզուին։ Նոյնպէս չենք հանդիպիր հոս բառերու, նախդիրներու, մասնիկներու խնայող, անճիշտ եւ երբեմն իսկ անճաշակ գործածութեանց, որ սովորական են բոլոր ցեխադարեան մատենագիրներուն։ Սոյգ է դժբախտաբար բոլորովին ալ անաղարտ մնացած չեն. ոչ միայն սպրդած մտած են բառեր, որոնք դասական լեզուի վարժ ականջներու քիչ մը խորթ կը հնչեն, զոր. օր. “պատկերաճոխ„, “աստուածակարծեալ„, այլ տեղ տեղ նոյն իսկ իրենց փաւստոսեան բուն նկարագիրը կորսնցուցած են. մանաւանդ՝ էջ 6էն մինչեւ յաջորդ գլուխը՝ եւ անոր մէջ մէկ երկու հատուածներ մահացու վէրքեր առած են։ Սակայն այս ամէնը խնդրոյն իսկութիւնը չեն փոխեր. արտաքուստ եկած պատահական մակաբոյսեր են, որոնց մէջէն հատուածներուն նախնական դասականութիւնը այնպէս դուրս կը ցայտէ, ինչպէս պղտոր ջրոյ մէջէն արեգական պատկերը։

*Որպէս զի ընթերցողն իրին վրայ դատաստան կտրէ՝ աւելի իրին առարկայականութենէն քան թէ մեր ենթակայական դատաստանէն, յառաջ բերենք հոս երկու լեզուներէն ալ երկու երկու կտորներ։*

Խմբագրողին լեզուն (Ցառաջաբանէն)։

*"Եւ եղեւ ոչ ի կամայական պիտոյից վարժ խուզակի զանստագրեալ (= զանսուտ գրեալ) ժամանակ եւ զնախնի քաջացն ձեռնարկելով դրոշմել վիպասանութիւնս՝ զիմն յիշատակել զառասպելս եւ ի նոյն շարագրելով ասացից զառ ի յապայսն եղելոյ եւ ցուցից համառօտիւք զարդեաց ժամանակացս զաղետիցս վերաբերութեան զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն յիշատակելով։"*

Ոսկեդարեան լեզուն (Ցառաջաբանէն)։

*"Այդ հայելով ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ, զոր եգիտ դրոշմեալ ի վերայ արձանի ի Մծբին քաղաքի յապարանսն Սանատրուկ արքայի՝ հանդէպ դրան արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն։*

*Քանզի զսիւնս? տաճարին այնորիկ խընդրեալ ի դուռն արքային Պարսից եւ բացեալ զաւերածն վասն սեանցն ընդ դիպան արձանագրին դրոշմեալ ի վերայ վիմի զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց, յունարէն դպրութեամբ։"*

Խմբագրողին լեզուն (Պատմութենէն)։

"Բայց ես Նախ առաջին զվէպս յաՀեղն արքայ եւ յարի այրն սկսայց ասել, Նախ զնախնեացն պատմութիւնս՝ ուստի եղեւ սկիզբն ամենայն երկրի շինուածոց լրմանց, եւ անտի ի սոյն պատուաստելոյ յաւդել զգլուցակարգութեան վէպս Հսկայազանցն եւ զառասպելս ունայն անհանճար զաւրացն, զոր ի մեծ երկանցն աշտարակին յղութիւն ծնանելով ընդ մեծ անապատ անթիւ, որ ի կայս անլուրս ձայնից անդադար ի վերայ առն ընկերի առնոյր սուրն Տիտան, յորում առաջին թագաւորեաց ի վերայ երկրի" էջ 1—2։

Ոսկեդարեան լեզուն (Պատմութենէն)։

"Արդ՝ այս են անուանք ազգածինն արանց անդրանկելոցն[1] ի Բաբելոն, գնացելոցն ընդ կողմանս Հիւսիսոյ յերկիրն Արարադայ։ Զի չուեաց խաղաց գնաց Հայկն ի Բաբելոնէ կնաւն եւ որդւովքն եւ ամենայն աղխիւն Հանդերձ։ Եւ չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ ի տանն որ ի լեռնոտինն, որ զառաջինն շինեալ էր Զրուանայ Հաւրն [եւ] եղբարբքն Հանդերձ։

Եւ ապա ետ զնա Հայկն կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում որդւոյն Արամանեկայ։ Եւ ինքն չուեաց գնաց անտի եւս ի Հիւսիսակողմն եւ չոգաւ բնակեցաւ ի բար-

---

1 "Ընդրանկանամ" միայն Հոս կու գայ. ասոր ոսկեդարեան լեզուին չհակառակելուն վկայ է Ս. Գրոց անդրանկացուցանել բառը. Գիրք Օրին. ԻԱ. 16։

ձրաւանդ դաշտավայրի միոջ. եւ կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք, յանուն Հարցն. էջ 2։„

Երկու յառաջբերութիւններէն կը տեսնուի, որ ձեռքերնիս ունինք գրութիւն մը, որուն մէջ երկու իրարմէ էապէս տարբեր լեզուներ կը գտնուին։ Իբրեւ դասական յառաջ բերուած կտորներուն մէջ չկայ բառ մը, ասութիւն մը կամ նախադասութիւն մը, որ ոսկեղենիկ լեզուին հակառակի. մինչդեռ միւս կտորները իրենց “ձեռնարկել„ներով “զին,,ներով ‘‘շարագրել,,ներով “վերաբերութիւն,,ներով եւ հելլենաբան խրթին շարադասութեամբը մեզի յիշեցնել կու տան Խոսրովիկ մը, Սեբէոս մը եւ Օձնեցի մը, որոնք թէ ո՛ր դարու մատենագիրներ են, ըսել հարկ չկայ։

Եթէ մատնանշուած հատուածները ոսկեդարեան են, ինչո՞ւ Վիեննական Մխիթարեանները ցայժմ անոնց մասին լուռ մնացին, թերեւս հարցընէ մէկը. այնպիսւոյն կը պատասխանենք, որ եթէ Վիեննական Մխիթարեանները հարեւանցի ակնարկութիւններէն քիչ մը անդին անցնելով զԱնանուն ուսումնասիրած ըլլային, նոյն հատակոտորներուն ոսկեդարեան ըլլալը վաղուց արդէն ծանուցուած կ՚ըլլար։ Հարեւանցի ակնարկութիւններն ալ ընդհանրապէս եղած են ա՛յն առենները, երբ Մ. Խորենացին տակաւին իր բարձր հեղինակութեան մէջ ըլլալուն՝ այնչափ դիւրին չէր Ե. դարուն մէջ երկու ‘‘Հայոց Պատմութիւն,,ներ ընդունիլը։

Տարբեր եզրակացութիւն մը պիտի չստանանք, եթէ ոսկեդարեան համարուած հատակոտորները միւս հատուածներուն յարաբերութեան մէջ նկատենք. արդիւնքը պիտի ըլլայ նոյնպէս անոնց իրական հատակոտոր ըլլալը։ 1. “Եւ եղեւ ոչ ի կամայական պիտոյից վարժ խուզակի„ հատուածը ամենեւին ներքին առնչութիւն մը չունի յաջորդներուն հետ, հոն կրկնուած են ինչ որ ամբողջին բովանդակութիւնն է. եւ ո՛րչափ ընդհանուր, անորոշ եւ նոյն իսկ հակիմաստ գծերով։ Այն՝ որ քիչ մը վերջը պիտի ըսէ թէ իւր գլխաւոր նպատակն է Հայոց եւ Պարթեւաց հինգ թագաւորներուն պատմութիւնը, կրնա՞ր երբեք այս տեղ “զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն յիշատակելով„ անըմբռնելի, անորոշ խօսքովը բաւականանալ եւ կամ՝ կրնա՞ր անոր բոլորովին երկրորդական տեղ մը տալ։ 2. Անընդմիջապէս յաջորդող (դասական) հատուածը պակասաւոր է. ամբողջին նկարագրէն եւ ընթացքէն կը տեսնուի, որ հոն հեղինակն իւր պատմութեան ուսկի՛ց եւ ի՛նչպէս առած ըլլալուն վրայ կ՚ուզէ մեզի տեղեկութիւն տալ, եւ սակայն տեղեկութիւնն առանց ամբողջացընելու, մանաւանդ թէ առանց ամենակարեւորն ըսելու, կը փակէ հատուածն եւ յաջորդին անցնելով կը սկսի մեզի պատմել թէ Մարաբաս երբ եւ ինչպէս գտած է իւր պատմութեան նիւթը։ Յաջորդին “զոր իմ գտեալ ի Միջագետս„ խօսքով կնճիռը չի լուծուիր. վասն զի՝ անոր եւ ասոր մէջ ո՛չ քերականօրէն եւ ո՛չ

ալ տրամաբանօրէն կապակցութիւն մը ըլլալով, հոս աւելի աւելորդ նախադասութեան մը դերը կը կատարէ։ 3. Աւելի զգալի անհամաձայնութիւն մը։ "Ես Ագաթանգեղոս„ով սկսող հատուածին մէջ, որ իբրեւ արձանագրին վերնագիրը յառաջ կը բերուի, հակառակ վերոյիշեալ հատուածներուն՝ բացայայտ կերպով կ'ըսուի թէ միայն Հայոց առաջին թագաւորաց պատմութիւնն է արձանագրին բովանդակութիւնը. "զամն եւ զաւուրս առաջին թագաւորացն Հայոց։„ — Ահա այսչափ անկապակցութիւնք եւ հակասութիւնք Անանունի միայն ներածութենէն։ Ի՞նչ ըսենք ինքնին իսկ մարմնոյն նկատմամբ։ Հայկայ ծննդաբանութիւնը կանխող հատուածներուն բովանդակութիւնը պիտի ըլլար ըստ ինքեան Հայկայ ո՛ր ցեղէն, ո՛ւր եւ ե՛րբ ծնած ըլլալը՝ նախագիտելի ծանօթութիւններ, որոնք Հայկայ անձնաւորութեան եւ սերնդեան պատմութեան համար անհրաժեշտ հարկաւոր էին, եւ սակայն ուրիշ բան չէ, բայց եթէ ըստ ամենայնի առաջին հատուածին նման՝ կրկնութիւն Հայկայ պակասաւոր պատմութեան։ Ի՞նչ ըսենք Արշակունեաց (հմմտ. Մ. Խորենացի ըստ Ն. Մառի, ՀԱ. 1895, էջ 96) եւ Մամիկոնեանց ցեղաբանութեան նկատմամբ, որոնցմէ առաջինը նոյնպէս պակասաւոր է եւ յաջորդ գլխուն հետ ժամանակագրօրէն բնաւ կապ չունի, իսկ երկրորդը բոլորովին անյարմար տեղ մը զետեղուած է։ Այս ամէնը Անանունին մէջ երկու հեղինակ ընդունելով միայն կարելի

է մեկնել։ Մին գտած է միւսին գրութեան հատակոտորները, զորոնք ըստ կարելւոյն ամբողջացընելու համար իր կողմանէ յաւելուածներ ըրած է. բայց նիւթին վրայ անդրագոյն ծանօթութիւն չունենալով՝ զանոնք չէ կրցած յօրինուածական ամբողջութեան վերածել։ Ուրեմն անուղղակի կերպով դարձեալ Ե. դար կը փոխադրուինք։

Անանունի այս կցկտուրութեան պարագան զիս կը ստիպէ ենթադրելու, որ նոյն իսկ սկզբնագրին հատակոտորները շատ խեղճ վիճակի մէջ խմբագրողին ձեռքը ինկած են. թէ ինչու 6րդ էջէն վերջը եկող հատուածներուն շատերը չունին նախընթացներուն ճոռոմաբանութիւնը, հոմանուանց կուտակութիւնն ու լեզուական ոյժը՝ այսու դիւրին է մեկնել. որչափ կ'երեւայ խմբագիրը զասոնք կարդալու ատեն դժուարութիւններու հանդիպած է, անոր համար գէթ բոլորովին անհետանալէն ազատելու համար՝ անոնց ընդհանուր բովանդակութիւնն առնելով բաւականացած է։

Մինչեւ հիմայ ըսածնիս երկու կէտի մէջ կարելի է ամփոփել։ Նախ թէ Փաւստոս Հայոց նախնական պատմութիւն մը գրած է. երկրորդ՝ թէ ներկայ Անանունին մէջ կան հատակոտորներ, որոնք իրենց լեզուաւը սկզբնագիրը մինչեւ Ե. Դար կը հանեն։ Այս երկուքն ըստ ինքեան ստուգապէս կը հաստատեն ինչ որ ցայժմ ապացուցանելու կ'աշխատինք։ Սակայն խնդիրը բոլորովին անտարակուսելի ընելու համար՝ կ'աւելցընենք երկու ապացոյցներ ալ, որոնցմով

կը յուսանք Թէ իրաւունք պիտի ստանանք նոյն իսկ անոնց առջեւ, որոնք Թերեւս Անանունի վերոյիշեալ հատակոտորներուն լեզուին մասին մեր յայտնած կարծեաց հանդէպ տարակուսական դիրք մը բռնելը՝ տակաւին իրաւացի համարին։

1. Լեզուագիտական զուգադիպութիւն Անանունի եւ Փաւստոսի.

Անանուն։

Զօրեօք խաղաց գնաց Հայկն ի Բաբելոնէ կնաւն եւ որդւովքն եւ ամենայն աղխիւն հանդերձ եւ չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ. էջ 2։

Զօրեօք խաղաց գնաց Արշակ արքայն ամենայն զաւրօքն հանդերձ յարեւելից երթալ ի Բաբելոն ... եկն եհաս ի Բաբելոն, 7։

Եւ նորա զհետ մտեալ Թափեցին ի նոցանէ երամակս ձիոց եւ ջորեաց եւ ուղտուց, 4։

Փաւստոս։

Խաղաց գնաց Թագաւորն Արշակ բազմակոյտ նախարարօքն, չուեաց ընդ Աղձնիս ընդ իւր իշխանութիւնն, չոգաւ Թափեցաւ յերկիրն արուաստան, էջ 111։

Խաղաց գնաց Արշակ արքայ Հայոց Մեծաց յերկրէն Ասորեստանեայց հանդերձ հարքն իւրով եւ ամենայն ընտանեօք իւրովք, եկն եհաս յերկիրն Հայոց, էջ 55։

Թափէին ի նոցանէ աւար բազում, 122. — Նոյնպէս լցան բազում աւարաւ ... ձիովք եւ ջորովք եւ ուղտովք, զոր ինչ Թափեցին 166։

Թափեցի՛ց իսկ այսօր է տեղ զ՚կապարճս իմ, 4։

Եւ ընդ ճեղքս մտեալ զաւրութեամբ հար-կանէ նետիւ զատախտակս երկաթիս, եւ ընդ պղնձի վահանն ի բաց անցուցանէ ընդ մանեղէն ար-ձանն յերկիր խարսխեալ վառարեալ գնեան. 4։

Ըստ լոյս համբաւոյ յոյժ տոփեալ էր ի վե-րայ անձին եւ գեղոյ նորա գեղեցկութեան, 5։

Թափեաց զնոսա նաւն ի կղզին 77. — եկն Թափեցաւ յաշխարհն նորա, 21։

Իսկ նա ընդ ճեղքս մտեալ հարկանէր զայրն նետիւ, եւ կարանէ ի կարան Թափ հանեալ զնետն ցամաք ընդ ենոյր վնա, 215։

Առ համբաւ ցանկութեան անուան տոփե-ալ լինէր, 99։

Մտադիր կ'ընենք, որ "տափիմ,, հիներուն քով միայն Փաւստոս, Ագաթանգեղոս եւ Զգօն ունին։

Ընդ տեղւոյն արձանագրին (այսինքն՝ արձանագրին առջեւի կամ երեսի կողմը) դրոշմեալ...։ զամն եւ զաւուրս հինգ թա-գաւորացն Հայոց եւ Պարթեւաց, 1։

Արեաց զնդին պատեհ է տեղւոյն ելանել զօրացն Յունաց, 161. — Հրաման տայր յա-ռաջ խաղալ. առ տեղւոյն պատահել զօրացն Յունաց, 161 (այսինքն՝ Յունաց զօրաց առ-ջեւը կամ դիմացը)։

Որչափ ինծի ծանօթ է բառս այս իմաստով ուրիշ տեղ չի հանդիպիր։ Բնագրին մէջ "ըստ դիպան" էր, ուղղեցինք "ընդ դիպան"։ Զայս կը պահանջէ թէ իմաստը եւ թէ

ոսկեդարեան լեզուին քերականութիւնը. ձեռագրական համեմատութիւնները սոյն ուղղագրութիւնը լիովին կ'արդարացընեն. Հմմտ. իմ "Սարարա՞դ„ թէ "Արարատ„ յօդուածս, (Յուշարձան, Վիեննա 1912, էջ 433)։

Ծածկեալ յաւերժէ, 1. — Բացեալ յաւերժն, 1։

Զօրականէն եւ ընկենուն զԱնտիոքոս ի խոնարհ, 8։

Յօրինել շինել զամենայն գերութիւնս աւերածոյն, 122։

Զօրականէին Թագաւորին Պապայ, 196։

Այս եւս ուրիշ տեղ չի հանդիպիր։

Որում ոչ ոք կարեր դէմ ունել պատերազմաւ, 9։

Ոչ ոք կարէ դէմ ունել յաղթութեան նորա, 199։

Սովորականը գործած է, Հոս տրական։

Անդրէն ուխտ խաղաղութեան մերոյ հաստատուն կացցէ ի միջի մերում, 13։ — Եւ միաբանեալ առնեն ուխտ միաբանութեան, 12։

Կամեցաւ առնել ընդ նմա բարեկամութիւն 5։

Ուխտ խաղաղութեան, 17, 115. Եդ ընդ նմա ուխտ խաղաղութեան, 140. — Կացցէ յաւերժին միաբանութեան, 106։

Կոչէր զի յանձնհեսցէ ուրայեն ի մէջ իւրեանց... բարեկամութիւն, 138։

Եւ էր խաղաղութիւն ի մէջ երկոցունց թագաւորութեանցն այնոցիկ, 12։

Զօրաժողով լինի Բէլ արքայ 3։ Զօրաժողով լինի եւ գնայ, 8, 12։ Եւ շարաժողով լինէին Մամիկն եւ Կոնակն ի վերայ նորա ի միում տեղւոջ, 12։

Ճոխն չաստուածացեալ 3։

Յաւերածի արքունական կայենիցն (իւր բնակավայր), 1։

Կամեցաւ զնա ըմբռնել ի բուռն իւր, 3։

Հրամանատար ամենայն թագաւորութեանն, 9։

Բարձրանալ, 2։

Կոտորել ոտիւք եւ ձեռօք, 8։

Երանակ ձեռց..., 4, 6։

Եւ ոչ մեծարէր զնա աստուածարէն շքով, 3։ — Եւ կանգնէ զկապարճան... ակայարէն, 4։

Մինչդեռ խաղաղութիւն էր ի մէջ թագաւորաց երկոցունց, 44։ Յոյժ խաղաղութիւն էր ի մէջ թագաւորացն երկոցունց։

Զօրաժողով լինէր Թադաւորն Պարսից, 120. — Զօրաժողով լինէր Արշակ արքայ, 122։

Զօրաժողով լինել ի վերայ. 119։ —

Առաքէր Սուրէն պարսիկ մի ճոխ, 207։

Բնակութիւն իւրոց կայենիցն, 33. Ելանէր յեպիսկոպոսական կայենէն, 97։

Ըմբռնել ի բուռն, 212։

"Հրամա(նա)տար" 31. ըստ Պետերբ. ի Ձեռագրին։

Բարձրանալ, 9։

Ոտիւք եւ ձեռօք եւ պարանոցաւ կապելով։

Երանակ ձեռց, 212, 213։

Այս յայնմ ժամանակի միաբան խորհեցաւ աշխարհօրէն խորհուրդ, 38. — Կատարեցան յանկարծօրէն, 95. — Պատրաստէին ինչ ըստ նմա արժանի աւագօրէն ազատ, 97։

Ինչպէս ամէն մատենագիր, նոյնպէս Փաւստոս իւր սիրական բառերն եւ ասացուածքներն ունի, զորոնք՝ ընթերցողը ձանձրացընելու եւ երբեմն իսկ ծիծաղցընելու չափ կը գործածէ, այսպիսի բառեր են “յայնժամ„, “յայնմ ժամանակի„, “վաղվաղակի„. մանաւանդ “Հանդերձ„ նախադրութիւնը ամէն պարբերութեան մէջ պէտք է որ հանդիպի. Ճիշտ նոյնը ըսելու է նաեւ Անանունի համար։ Սակայն դեռ աւելին կայ. Անանուն եւ Փաւստոս նոյն իսկ պատմական ոճի թերութեանց մէջ իրարու հետ զուգակցօրէն կ'ընթանան։ Այսպէս՝ Փաւստոսի պէս Անանունն ալ սովորութիւն ունի զօրաց թիւը, զօրութիւնը, յաջողութիւնն եւ իւր սիրելի (ինչպէս նաեւ ատելի) անձանց յատկութեանց նկարագրութիւնը ծայրայեղել եւ կամ՝ շատ անգամ արդէն յառաջ բերուած պատմական դէպք մը վերստին պատմել այնպէս, իբրեւ թէ այս մասին ամենեւին խօսած չըլլայ։ “Եւ յուղարկէ զնա ի Մրծանայ ընդ արեւմուտս զաւրու մեծաւ եւթանասուն հազարաց եւ մեծամեծ իշխանաւք նախարարաց հազարաց բիւրաւորաց, որում ոչ ոք կարէր զդէմ ունել պատերազմաւ 9. — Եւ եղեւ պատերազմ մեծ առ Անտիոք, քաղաքաւ, հարկաննեն եւ սրբաջրունջ առնեն զզաւրն Դեմետրեայ, 8. Զի ոչ գտանէր յայնմ ժամանակի նման նորա? այր ոք ամենեւին, 5 (Փաւստոս. Զի այլ ոչ գտանէր ուրեք նման նմա ի վերայ երկրի, 27. զի ուրեք երբեք նման նմա ոչ գտանէր, 59)։ Պատմական կրկնութիւն-

ներու համար ընթերցողը կը խաւրենք Անանունի 3. փաւստոսի 133, 139, 151 եւ 173 էջերը։

Այս ապացոյցին զօրութիւնը լաւ ըմբռնելու համար՝ միտ դնելու է, որ 1. այն հատակոտորները, որոնցմէ համեմատութիւնները յառաջ բերուած են, Անանունի ամբողջութեան հազիւ 5 թուղթը կը գրաւեն. 2. աւելի նախադասութեանց եւ ասութեանց քան բառերու համեմատութիւններ են. 3. ասոնց մէջ կը գտնուին ոչ միայն այնպիսի բառեր եւ ասացուածքներ, որոնք աւելի փաւստոսի քով գործածական են, այլ նաեւ այնպիսիններ, որոնց համեմատականներուն միայն փաւստոսի քով կը հանդիպինք։ 4. երկուքին մէջ եղած լեզուագիտական նմանութիւնը՝ իսկապէս ոճի զուգակցութիւն է, որ բացարձակապէս կը ժխտէ երկու հեղինակի գաղափարը։

Ո՛րչափ խախուտ հիմանց վրայ հաստատուած են ուրեմն † Գրիգոր Խալաթեանցի[1] եւ Ստ. Մալխասեանցի[2] Անանունի եւ Սեբէոսի բառագիտական համեմատութիւններէն հանած հետեւութիւնները։ Ցարգելի քննադատներս առանց ապացուցանելու թէ Սեբէոսի եւ Անանունի մէջ եղած նմանութիւնները միայն երկուքին առանձնայատուկ են՝ զայն իբրեւ այնպիսի կ'ենթադրեն, եւ անկից իւրաքանչիւրն իւր տեսութեան համեմատ հետեւութիւն մը կը

[1] Армянскій Эпосъ 63—76.

[2] Սեբէոսի պատմութիւն եւ Մ. Խորենացի, էջ 88–89։

հանէ, որով Գր. Խալաթեանցի կարծեօք օգտուողը Անանունը կ'ըլլայ եւ ոչ թէ Սեբէոս. իսկ Ստ. Մալխասեանի համաձայն Սեբէոս եւ Անանուն իրարու հետ կը նոյնանան։

Եթէ ընթերցողին ծանօթ են Գր. Խալաթեանցի համեմատութիւնները, զորոնք ի նպաստ իւր գործածած է Ստ. Մալխասեան, անշուշտ կը տեսնէ, որ ջանացած ենք միշտ մէջը բերել նաեւ այն ասացուածքներն ու բառերը, զորոնք յարգ. քննադատը կը գտնէ միայն Սեբէոսի քով. եւ կրկնապատիկէն աւելին ըրած ենք։ Գալով աշխարհագրական անուններուն, նոյնպէս սխալման մէջ է մեծանուն քննադատը. անոնք մեծաւ մասամբ Փաւստոսի քով արդէն կան։ Զոր օր. "Արուաստան" 116. "Միջագետք Ասորւոց" 116. "Հայաստան երկիր," 23, 47, 56 — աշխարհ 1, 5, 8. 13, 120. "Ծծբնացւոց քաղաք" = Մծբին 19, 23, 111. "Բահղ" 172, 201, Քուշանք 172, 201. — իսկ եթէ կան անուններ ալ, ինչպիսի են "Կապուտկեայ" եւ "Լեառն Կաւկաս", անոնք ալ կու գան արդէն Ագաթանգեղեայ եւ Փարպեցւոյ քով. "Թետալացիք" եւ "Մրծուրին" յետսամուտ են։ Հետեւաբար Գր. Խալաթեանցի եզրակացութիւնը հակաշրջելու է. այսինքն՝ օգտուողը Սեբէոս է եւ ոչ թէ Անանուն. իսկ Ստ. Մալխասեանինը բոլորովին ջնջելու է գէթ նկատմամբ Անանունի հատակոտորներուն։ Սեբէոսի վրայ քիչ ազդեցութիւն չէ ձգած Փաւստոսի նաեւ Բ. Պատմութիւնը. առ այս համոզուելու համար

*երկուքին համեմատութիւնը միայն բաւական է։*

*Գր. Խալաթեան ուսուցչապետը նկատելով, որ թերեւս ընթերցողներն իր համեմատութիւններէն հակառակ հետեւութեան յանգին, անկից զմեզ կանխաւ զգուշացընելու համար՝ առջեւնիս կը դնէ Անանունի կցկտուրութեան եւ առասպելաբանութեան հանդէպ՝ Սեբէոսի պատմութեան արժանահաւատութիւնը եւ գլխաւորաբար անոր ամբողջ հայ պատմագիրներու մէջ գրաւած գնահատելի ինքնուրոյնութիւնը. բայց այս պատճառաբանութիւնն ըստ իս* „ad rem“ *չէ։ Վասն զի յարգելի քննադատին համեմատութիւնները բոլորն ալ Անանունի եւ Սեբէոսի մէջ աւելի լեզուական համաձայնութիւն մը կը հաստատեն. արդ ինչպէս անվաւերագիրը վաւերագրէն, նոյնպէս վաւերագիրն անվաւերագրէն կրնայ լեզուականօրէն օգտուիլ, առանց իր պատմուածներուն ճշմարտութիւնն եւ մատենագրական արժանահաւատութիւնը տուժելու։*

## *2. Պատմական զուգակցութիւն:*

*Միշտ հաւատարիմ մնալով մեր սկզբունքին՝ հոս ալ խօսիլ պիտի տանք աւելի համեմատական օրինակներու։ Կը սկսինք Բագրատունեաց եւ Մամիկոնեանց մասին պատմուածներէն։*

| *Անանուն* | *Փաւստոս* |
|---|---|
| *Եւ յուղարկէ զնա ի Մրծանայ ընդ արեւմուտս գաւրու մեծաւ եւ թանա-* | *Ապա յետ այսր ամենայնի զօր արարեալ զօրավարն սպարապետն Մանու-* |

տուն հազարաց սպառազինաց, եւ մեծամեծ իշխանաւք նախարարաց հազարաց բիւրաւորաց, որում ոչ ոք կարէր զդէմ ունել պատերազմաւ։ Նմա ընդ առաջ ելանէր Բագարատն Փառաւզեան յորդւոցն Արամանեկայ նախարար մեծ հանդերձ զաւրու։ Մատուցանէ նմա պատարագ ոսկի եւ արծաթ եւ զարդարէ զնա ի անդր եւ ի վակաս պսակէ զնա ի թագ հայրենի, եւ նստուցանէ զնա ի վերայ ոսկիապատ ականակուռ գահոյիցն եւ տայ նմա զդուստր իւր ի կնութիւն։ Զսա արար Արշակ արքայ ասպետ Հայաստան երկրին, որ էր իշխան եւ հրամանատար ամենայն թագաւորութեանն հրամանաց գլուխ եւ հայր արքային եւ եղբայր, էջ 9։

էլ հանդերձ Արշակունի տիկնաւն եւ մանկամբքն երկոքումբք Արշակաւն եւ Վաղարշակաւն, հանդերձ ամենայն բանակաւն Հայոց մեծամեծ աւագայնովքն նախարարօքն երեւեալ հասանէր ի գաւառն Կարնոյ, եւ ամենայն տանուտեարք ընդ նմա։ Եւ տայր սպարապետն Մանուէլ զդուստր իւր Վարդանդուխտ կին Արշակայ մանկանն Արշակունոյ եւ փեսայ իւր առնէր զնա։ Առնէր հարսանիս եւ եղբօր նորին Վաղարշակայ եւ տայր նմա զդուստր ասպետին բագրատունւոյ ի Սպեր գաւառէ, որ թագաւորին (ըստ Գր. Խալաթեանցի) թագակապքն լեալ էին ի ընմէ ազգին թագաւորութեան Արշակունւոյ, էջ 216։

Այս երկու հատուածները Գր. Խալաթեանց ալ յառաջ բերած է իւր ուսումնասիրութեան մէջ („Армянскій Эпосъ“ էջ 92—93)։ Նպատակը ի հարկէ այն է, ինչ որ էր լեզուական համեմատութեանց մէջ, այսինքն՝ ցուցընել թէ Անանունը Փաւստոսէն օգտուած է նաեւ պատմականօրէն, առնլով անկից շատ մը պատմական յետագայ իրողութիւններ իբրեւ ատաղձ իւր կազմելիք Հայոց նախնական պատ-

*մութեան։ Սակայն ինչ որ Մեծ. քննադատին լեզուական համեմատութիւններուն նկատմամբ ըսինք, նոյնը հոս ալ կ'արժէ։ Բայց որովհետեւ Գր. Խալաթեանց Անանունի այս հետաքրքրական հատուածէն Հեղինակին մտաց մէջ՝ որոշ ժամանակի մը (Է—Ը. Դար.) ազդեցութեան տակ յառաջ եկած՝ Բագրատունեաց ցեղին ծագումը նուիրագործելու եւ բարձրացընելու ձգտումներ գտած կը կարծէ, եւ գլխաւորաբար այս կարծեաց վրայ յեցած Անանունի գրութեան ժամանակը որոշելու փորձեր կ'ընէ, լռութեամբ անցնիլ կարելի չէ։*

*Իրը՝ Մեծ. Ուսուցչապետին Անանունի հանդէպ բռնած սկզբնակէտէն դատելով, շատ բնական է այս հետեւութիւնը. եւ նոյն իսկ կրնայ ըլլալ, որ Բագրատունեաց Հայկէն ուղղակի յառաջ բերումը խմբագրէն միջարկուած ըլլայ, մանաւանդ որ խմբագրութիւնն ալ կատարուած է ճիշտ այն ատենները, երբ Բագրատունիները Հայ նախարարաց մէջ ամենամեծ հեղինակութիւնը կը վայելէին։ Բագրատունիները Հայկայ հետ միացընող հատուածն[1] ալ այնչափ վաւերական չերեւար. թէ՛ լեզուն խորթ է, եւ թէ՛ նախորդ եւ յաջորդ հա-*

---

*1 "Սա (Փառնաւազ) ծնաւ զԲագամ եւ զԲագարատ, եւ Բագարատ ծնաւ զԲիւրատ, եւ Բիւրատ ծնաւ զՍապատ, եւ որդիքն Բաղարատայ ժառանգեցին զժառանգութիւնս իւրեանց ի կողմանս արեւմտից, այսինքն է Անգեղ տուն, վասն զի կոչեցաւ Բագարատ եւ Անգեղ, զոր ի ժամանակին յայնմիկ ազգ բարբարոսաց աստուած կոչեցին, էջ 6։"*

տուածներուն հետ կապակցութիւնը այնչափ զգալի չէ․ Թերեւս խմբագիրը նոյն գաղափարին մղուած ըլլայ Անանունի վերոյիշեալ հատուածին "Բագարատն փառազեան յորդւոցն Արամանեկայ" խօսքէն, որ ընդհանուր իմաստով ալ կրնայ առնուիլ։ Իսկ թէ Բագրատունիները վաղուց հայ նախարարաց կարգին մէջ շատ մեծ՝ եւ նոյն իսկ Մեծ. Ուսուցչապետէն Փաւստոսի դիւցազները հռչակուած՝ Մամիկոնեաններէն աւելի մեծ դիրք ունէին, կը վկայէ նոյն ինքն Փաւստոս իր վերոյիշեալ հատուածին մէջ, կը վկայէ նաեւ Ագաթանգեղոս (Հմմտ. էջ 414, 460 ըստ Նոր հրատարակութեան)։ "Թագակապ" կամ "Թագադիր" եւ "ասպետ" պատուանուններն միայն՝ շատ բան կը յայտնեն արդէն. խնդրոյս համար քիչ նշանակութիւն չունի նաեւ այն իրողութիւնն, որ 483ին ապստամբութեան ատեն հայ նախարարները փոխանակ Վահան Մամիկոնեան, որ ապստամբութեան գլուխն էր, ընտրելու, Սահակ Բագրատունին կ'ընտրեն, մարզպան Հայաստանի։

Ուրեմն եթէ Անանունի մէջ Բագրատունիները բարձրացնելու ձգտում մը կայ, այն՝ առնչութիւն չունի մեր հատուածին հետ, որուն Բագրատունեաց մասին աւանդութիւնը իր ամէն մասերովը համապատասխան է Փաւստոսի՝ եւ միայն Փաւստոսի պատմածներուն։ Մեծ. Ուսուցչապետը թերեւս իրաւունք ունենայ ըսելու թէ Անանունի մէջ 378/9 տեղի ունեցած Վաղարշակայ Բագրատունեաց իշխանին դատեր հետ

մութեան։ Սակայն ինչ որ Մեծ. քննադատին լեզուական համեմատութիւններուն նկատմամբ ըսինք, նոյնը հոս ալ կ՚արժէ։ Բայց որովհետեւ Գր. Խալաթեանց Անանունի այս հետաքրքրական հատուածէն Հեղինակին մտաց մէջ՝ որոշ ժամանակի մը (Է—Ը. Դար.) ազդեցութեան տակ յառաջ եկած՝ Բագրատունեաց ցեղին ծագումը նուիրագործելու եւ բարձրացընելու ձգտումներ գտած կը կարծէ, եւ գլխաւորաբար այս կարծեաց վրայ յեցած Անանունի գրութեան ժամանակը որոշելու փորձեր կ՚ընէ, լռութեամբ անցնիլ կարելի չէ։

Իրը՝ Մեծ. Ուսուցչապետին Անանունի հանդէպ բռնած սկզբնակէտէն դատելով, շատ բնական է այս հետեւութիւնը. եւ նոյն իսկ կրնայ ըլլալ, որ Բագրատունեաց Հայկէն ուղղակի յառաջ բերումը խմբագրէն միջարկուած ըլլայ, մանաւանդ որ խմբագրութիւնն ալ կատարուած է ճիշտ այն ատենները, երբ Բագրատունիները Հայ նախարարաց մէջ ամենամեծ հեղինակութիւնը կը վայելէին։ Բագրատունիները Հայկայ հետ միացընող հատուածն[1] ալ այնչափ վաւերական չերեւար. թէ լեզուն խորթ է, եւ թէ նախորդ եւ յաջորդ հա-

---

[1] "Սա (Փառնաւազ) ծնաւ զԲագամ եւ զԲագարատ, եւ Բագարատ ծնաւ զԲիւրատ, եւ Բիւրատ ծնաւ զԱսպատ, եւ որդիքն Բագարատայ ժառանգեցին զժառանգութիւնս իւրեանց ի կողմանս արեւմտից, այսինքն է Անգեղ տուն, վասն զի կոչեցաւ Բագարատ եւ Անգեղ, զոր ի ժամանակին յայնմիկ ազգ բարբարոսաց աստուած կոչեցին, էջ 6։"

տուածներուն հետ կապակցութիւնը այնչափ զգալի չէ. Թերեւս խմբագիրը նոյն գաղափարին մղուած ըլլայ Անանունի վերոյիշեալ հատուածին «Բագարատն փառազեան յորդւոցն Արամանեկայ» խօսքէն, որ ընդհանուր իմաստով ալ կրնայ առնուիլ։ Իսկ թէ Բագրատունիները վաղուց հայ նախարարաց կարգին մէջ շատ մեծ՝ եւ նոյն իսկ Մեծ. Ուսուցչապետէն Փաւստոսի գիւցազները հռչակուած՝ Մամիկոնեաններէն աւելի մեծ դիրք ունէին, կը վկայէ նոյն ինքն Փաւստոս իր վերոյիշեալ հատուածին մէջ, կը վկայէ նաեւ Ագաթանգեղոս (Համտ. էջ 414, 460 ըստ նոր հրատարակութեան)։ «Թագակապ» կամ «Թագադիր» եւ «ասպետ» պատուանուններն միայն՝ շատ բան կը յայտնեն արդէն. խնդրոյս համար քիչ նշանակութիւն չունի նաեւ այն իրողութիւնն, որ 483ին ապստամբութեան ատեն հայ նախարարները փոխանակ Վահան Մամիկոնեան, որ ապստամբութեան գլուխն էր, ընտրելու, Սահակ Բագրատունին կ՚ընտրեն, մարզպան Հայաստանի։

Ուրեմն եթէ Անանունի մէջ Բագրատունիները բարձրացընելու ձգտում մը կայ, այն՝ առնչութիւն չունի մեր հատուածին հետ, որուն Բագրատունեաց մասին աւանդութիւնը իր ամէն մասերովը համապատասխան է Փաւստոսի՝ եւ միայն Փաւստոսի պատմածներուն։ Մեծ. Ուսուցչապետը թերեւս իրաւունք ունենայ ըսելու թէ Անանունի մէջ 378/9 տեղի ունեցած Վաղարշակայ Բագրատունեաց իշխանին դատը հետ

ամուսնութիւնն առաջին արշակունի թագաւորին ժամանակը փոխադրուած է. բայց այս փոխադրութիւնը կատարուած է ինքնին իսկ Փաւստոսէն կամ օգնութեամբ աւանդութեան մը եւ կամ Արշակունեաց Հարստութեան սկիզբն ու վախճանը, որ ըստ Փաւստոսի արդէն մերձեցած էր, այսպիսի սրտաշարժ եղելութեամբ մը իրարու հետ կապելու համար։

Հոս պէտք չենք մոռնալ ուրիշ դէպք մըն ալ, որուն մտադիր ըրաւ զմեզ Պրոֆ. Մարկուարտի „Erānšahr“ը (էջ 174)։ Արշակայ առջեւ եղող Բագարատ Փառազեանը չէ՞ յիշեցըներ Փաւստոսի Վրական Փառա[ւա]զեանները, զորոնք ‘‘հրաման տայր սպարապետն Մուշեղ հանել ի խաչ ի մէջ աշխարհին Վրաց,, (էջ 177)։ Այս պատմական զուգակցութիւնը ըստ իս մեզի համար գրեթէ այնչափ կարեւորութիւն ունի, որչափ Բագրատունեաց ‘‘ի բնմէ ազգին թագաւորութեան Արշակունւոյ թագաւորին,, թագակապ ըլլալը։ Պատմական արժէքին վրայ ստոյգ բան մը կարելի չէ ըսել, սակայն գէթ այսչափը ակնյայտնի է, որ Դ—Ե.րդ դարերուն մէջ արդէն Բագրատունիները ցեղակցութեամբ Վրական արքունեաց հետ կապուած կը համարուէին։

Անանունի Մամիկոնեանց հատուածը շատ

---

1 Մարկուարտի համաձայն՝ (անդ) Բագարատ Փառազեան նոյն է Տիգրանի կողմանէ Անտիոքի վրայ դրուած „Βαγαδάτης“ փոխարքային հետ. Յարգ. Ուսուցչապետին բանը շատ հաւանական է։ „Βαγαδάτης“ին „δ“ին չի փոխուելու մասին՝ տես անդ ծան. 6։

ընդարձակ ըլլալուն՝ յառաջ չենք բերեր, ընթերցողը գործքիս վերջը հրատարակուելիք դասական հատակոտորներու կարգին մէջ՝ զայն եւս տեսնելու առիթը պիտի ունենայ։ Ամբողջին բովանդութիւնը համառօտիւ այս է. Պատմագիրը իբր թէ խօսակցութիւն մը ունեցած է "առ արքայն խօսրով„ ձենաստանէն եկած դեսպաններուն հետ[1], որոնք "Ասին զուսանք եւ ի մերում աշխարհին յերգս իւրեանց "զՄամիկն եւ զԿոնակն արս երկուս լեալ քաջս եւ գլխաւոր եղբարս հարազատս„, եւն խօսքով հաստատած են եղեր Հայոց մէջ տարածուած աւանդութիւնը. որուն համեմատ երկու եղբարներուս հայրը Կառնամ, որ ձենաց թագաւորութեան երկրորդ աթոռը ունէր, մեռնելէն վերջը, մայրը կ'ամուսնանայ ձենաց թագաւորին հետ, ուսկից ձենբակուր անուամբ տղայ մը կը ծնանի, որ եւ կ'ըլլայ յետոյ ժառանգ թագաւորութեան։ Ասոր վրայ երկու եղբայրները կ'ապստամբին, բայց չարաչար յաղթուելով՝ կը փախչին Պարթեւաց Արտաւան Դ. թագաւորին քով, որ ձենաց թագաւորին հետ պատերազմի չբռնուելու համար՝ զանոնք իրենց ընտանեօք Հայաստան կը խաւրէ։

---

[1] Հ. Ն. Ակինեան, որ չենք գիտեր, ինչ պատճառներու վրայ յեցած զԱնանուն Վրթանէս Քերթողի կ'ընծայէ, այս խօսակցութեան մեծ կարեւորութիւն կու տայ, (տես Հանդ. Ամս. 1911 էջ 528), մինչդեռ պատգամաւորներուն բերանը դրուած խօսքերէն յայտնի կը տեսնուի որ աւանդութեան հեղինակութիւն մը տալու համար հնարուած է։

Արդ այս զարմանալի աւանդութեան իսկապէս մանրանկարն է Փաւստոսի Մամիկոնեանց ծագման նկատմամբ պատմածը։ “...Նա մեք չեմք իսկ լեալ ձեր ծառայք, այլ ընկերք ձեր եւ ի վերոյ քան զձեզ, զի նախնիքն մեր լեալ էին թագաւորք աշխարհին Ճենաց, եւ վասն եղբարց իւրեանց գրգռութեան, զի արիւն մեծ անկեալ է ի վերայ, վասն այնորիկ եմք գնացեալք եւ վասն հանգստի գտանելոյ եկեալ դադարեալ եմք„, 203 (Հմմտ. նաեւ էջ 167 եւ նոյնպէս 203 քիչ մը վար)։ Ձեր ծառաները չենք, վասն զի Ճենաց թագաւորական ցեղէն ենք. բայց գահակալութեան կռիւ ծագելով „եւ վասն եղբարց իւրեանց գրգռութեան„, որ եւ եղած է ուղղակի մեր նախահարց (Մամիկն եւ Կոնակ) յանցանքով, “զի արիւն մեծ անկեալ է ի վերայ„, պարտուած եւ փախած են անկից մեր նախնիք, “վասն այնորիկ եմք գնացեալք„, եւ գահը բարձրացող եղբօր ձեռքը այլ եւս չիյնալու համար հոս եկած բնակած ենք, “եւ վասն հանգստի գտանելոյ եկեալ դադարեալ եմք„։

Երկուքին համաձայնութեան ինչ աստիճանի ըլլալուն վրայ կատարեալ գաղափար մը կազմելու համար, լսելու ենք նաեւ Խորենացւոյ Մամիկոնեանց վրայ աւանդածը։ Խորենացւոյ համաձայն Մամիկոնեանները Հայաստան եկած են ոչ թէ Պարթեւաց Արտաւան թագաւորին, այլ “Արտաշրի որդւոյ Սասանայ„ ժամանակ. իսկ Ճենբակուր, որ Արբոկ անուն մըն ալ ստացած է, Մամիկոնեանց հետ եղբայրակցութիւն

չունի բնաւ։ Մամիկոնեանց նախահայրն ալ մէկ հոգի է Մամգուն (= Մամ եւ Կոն) անուամբ, որ Բզդոխ ըսուած մէկուն հետ Ճենբակուրի դայեկորդի էր։ Օր մը Բզդոխ Թագաւորին առջեւ Մամգունի վրայ չարախօսութիւն կ'ընէ, Մամգուն ալ Թագաւորին ձեռքէն ազատելու համար կը փախչի Արտաշիր Թագաւորին քով, որ սակայն մեռնելով՝ իւր որդին Շապուհ զՄամգուն Հայաստան կը խաւրէ։

Մամգուն անուան վրայ շատ խօսուած է. Քիշխան Մ. Թումանեան զայն յառաջ կը բերէ Չինաստանի Ճէն Հարստութեան Թագաւորներուն առանձնայատուկ Խու-Գու-Ման կամ Մանգուն անունէն (Հանդ. Ամս. 1911, էջ 519). Անահիտի 1908 տարւոյ 1—4. Թիւերուն մէջ անունս նկատուեցաւ Թաթարական անուն մը, եւ իրօք Կիրակոս Գանձակեցւոյն պատմածին համեմատ Մոնգոլներու մէկ խանը Մամգուն կ'անուանուէր. կան դեռ ուրիշ կարծիքներ ալ (Հմմտ. Բազմ. 1906, 390), բայց այսօր այլ եւս չի կրնար տարակուսուիլ թէ “Մամիկոնեան”ի “Մամ„ եւ “Կոն„ անուններէ Անանունեան ստուգաբանութիւնը՝ Խորենացին անհաւանական գտած եւ երկուքը իրարու հետ դարձեալ միացընելով իւր սովորական ճարտարութեամբը օտարահնչիւն “Մամկուն„ի վերածած է[1]։ Հետեւաբար Խորենացւոյ Մամգունը պատմական հիմ չունի բնաւ. ստոյգ է

---

1 Տե՛ս նաեւ Ն. Ադոնց „Началная исторія Арменіи“, էջ 26—27։

“Մամ„ եւ “Կոն„ ստուգաբանութիւնը շատ տղայական կ'երեւայ, բայց այն եւս ստոյգ է, որ Մամիկոնեանց ծագման բուն աւանդութիւնը՝ Հայաստան գաղթող մէկէ աւելի նախահայրեր կ'ընդունի, եւ նոյն իսկ “Մամ„ ու “Կոն„ անուններուն հետքերն կը նշմարուին պատմութեան մէջ. “Մամ„ Սեբէոսի (Մամակ Մամիկոնեան, էջ 48), իսկ “Կոն„ Փաւստոսի (էջ 201, ծն.) մէջ. երկուքն ալ իբրեւ անուն Մամիկոնեան իշխաններու: Փաւստոսի թէ Վենետիկի եւ թէ Պետերբուրգի հրատարակիչները չեն համարձակած Մանուէլ Մամիկոնեանին եղբօր Կոմս անունը “Կոն„ի փոխելու, շատ շնորհակալ ենք, որ գէթ ըսած են թէ Ձեռագիրներու “յամենայն օրինակս„ չորսին մէկը եւ այն՝ առաջինը միշտ Կոն է: Մենք ալ երկու Ձեռագիրներու հետ համեմատեցինք ու գտանք նոյնպէս:

Անանունի Մամիկոնեանց հատուածին “յայսմանէ այն է. սպարապետ„ բացատրութիւնն ալ, որ բառական թարգմանութեամբ կը նշանակէ՝ “անկից կամ այս ցեղէն է սպարապետը„ քիչ նշանակութիւն չունի: Է—Թ դարերու մատենագիր մը այսպէս գրած ժամանակ կ'ենթադրէ որ նոյն ատենները սպարապետութիւն կար եւ Մամիկոնեանց ձեռքն էր, մինչդեռ պատմութիւնը մեզի կը սորվեցընէ, որ Զ. դարէն ի վեր Մամիկոնեանները այսպիսի պաշտօնէ մը զրկուած էին: Ասոր վրայ աւելցընելու է նաեւ այն կէտն, որ Անանունը իւր՝ Խօսրով թագաւորի մը ժամանակ ապրելուն մասին ըրած անուղղակի

յայտարարութիւնը կատարելապէս կը համաձայնի Փաւստոսի ժամանակին, որ իւր պատմութիւնը կ'աւարտէ Հայոց Խոսրով Գ. Թագաւորին ժամանակները[1]:

Պատմականօրէն զուգակից են նոյնպէս հետեւեալ հատուածները.

Անանուն:

"Եւ հրամայէ Շամիրամ տանել զդի նորա (Արայի) ի վերնատունն (ապ. ունն) ապարանից իւրոց, եւ ասէ. "Ես ասացից աստուածոց լիզուլ զվէրս նորա եւ կենդանասցի:„ Իսկ իբրեւ նեխեցաւ դի նորա ի վերնատանն, հրամայեաց գաղտնի ընկենուլ ի վիհ եւ ծածկել: Եւ զարդարէ զոմն ի հոմանեաց իւրոց այր պաճուճանօք եւ համբաւ հանէ զԱրայի լիզուլ աստուածոցն եւ յարուցանել... եւ այնպէս համբաւ հանէ Արալիզաց Տիկինն Շամիրամ,„ 5—6:

Փաւստոս:

"Եւ եղեւ իբրեւ տարան զմարմինն սպարապետին Մուշեղի ի տուն իւր առ ընտանիս իւր, ոչ հաւատային ընտանիք նորա մահուն նորա: Իսկ կէպք յաւանելոյ ակն ունէին նմա, մինչեւ զգլուխն անգէն ի կոճեղն կարեալ կցեցին եւ հանին եդին ի տանիսն աշտարակին միոյ, ասէին թէ վասն զի այր քաջ էր, Առլեզք իջանեն եւ յարուցանեն զդա: Պահապան կային եւ ակն ունէին յաւանելոյ մինչեւ նեխեցաւ մարմինն„ 200—201:

"Արալեզ„ եւ "Առլեզ„ ընթերցուածները ամենեւին խնդիր չեն վերցըներ. միեւնոյն

---

1 Գ. Տէր-Մկրտչեան „Zeitschrift für armenische Philologie"ին մէջ (II. էջ 280-281) համառօտ բայց շատ զօրաւոր փաստերով կը ցուցընէ թէ "Փաւստոսեայ Բիւզանդացւոյ„ անուամբ կ'ակնարկուի "յամս Խոսրովու եւ Արշակայ Թագաւորացն„ ապրող թելակալ Փաւստոս եպիսկոպոսը:

տարբերութիւնը կայ նաեւ Եղնիկի մէջ (Եղնիկ, Վենետիկ 1826 էջ 94), այս երկու անուանց վրայ ուրիշ առթիւ։ Պատմական-զուգակցական աղերսներ կարելի էր փնտռել նոյնպէս Անանունի եւ Փաւստոսի Արշակունի այլ եւ այլ թագաւորական ճիւղերուն նկատմամբ աւանդածներուն միջեւ, բայց դժբախտաբար Անանունի համապատասխան հատուածին մէջ ձեռք մնած է, միայն այսչափը յայտնի է, որ երկուքն ալ “յերկրին Քուշանաց ի Բահլ քաղաքի„ եւ “ի Հայաստան աշխարհին„ Արշակունի երկու մեծ տոհմեր կ'ընդունին։ Հայ Արշակունի միայն մէկ թագաւորի յիշատակութիւն ունինք Փաւստոսի մէջ. այս մէկը սակայն ի նպաստ մեր տեսութեան մեծ ապացոյց մըն է։ “Եւ խաղացուցին ի յԱրտաշատ ի քաղաքէ ինն հազար տուն երդ Հրեայս, զոր ածեալն էր գերի Տիգրանայ արքայի արշակունւոյ յերկրէն Պաղեստինացւոց„ (145—46)։ . . . “Զայս ամենայն բազմութիւն Հրէից, զոր գերեցին տարան յերկրէն Հայոց, ածեալ էր յերկրէն պաղեստինացւոց մեծի թագաւորին Հայոց Տիգրանայ ի ժամանակին՝ յորժամ գերեաց նա եւ ած ի Հայս զքահանայապետն Հրէից զՀիրկանոս զառաջին ժամանակաւ„ (147)։ Երկու հատուածներուս Տիգրան արշակունին չկայ ներկայ Անանունին մէջ։ Բայց Փաւստոս Քրիստոսէ յառաջ 96—54 ապրող Տիգրան Մեծը արշակունի համարելով (մինչդեռ յիրականին Հայ Արշակունի հարստութիւնը Քրիստոսէ ետքը 66ին սկսած է)

Անանունի հայ Արշակունեաց ծագման ժամանակի մասին գրածը կը հաստատէ:

Մտադրութեան արժանի է նաեւ այն կէտն, որ Անանունի նախնական Հայաստանի սահմաններն ընդհանրապէս ծանօթ են Փաւստոսի. այսպէս Փաւստոս գիտէ, որ Հայաստան նախնաբար մինչեւ Կապադովկիա կը տարածուէր, "առաքէր հրեշտակս առ Թագաւորն Յունաց, եթէ Կեսարեաւ հետ՝ եւ տասն քաղաք մեր լեալ է" (Փաւստոս, էջ 195). գիտէ նաեւ թէ հարաւային կողմանէ կը տարածուէր մինչեւ Ասորւոց եւ Տաճկաց երկիրները, վասն զի՝ "...եւ զՈւռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց" (անդ.) եւ ուրիշ տեղ մը "Տուր քեզ զՄծբին քաղաք՝ որ է յԱրուաստանի[1] եւ մէջաշխարհին Հայոց[2] ձեռնթափ եմ" (էջ 116), ուսկից

---

[1] Անուանս ուղղագրութեան մասին տես Marquart, Erānšahr էջ 165 եւ 169. հմմտ. նաեւ Ագաթանգեղոսի նոր հրատարակութիւնը: Արուաստան՝ Հայաստանի արաբական սահմանագաւառը իր Մծբին մայրաքաղաքով 297էն իվեր Հռովմէացւոց ձեռքն էր, բայց 363ին խաղաղութեամբը Պարսից անցաւ:

[2] Fr Murad մեծապէս կը սխալի, երբ կը կարծէ, թէ "Մէջ կամ միջնաշխարհն Հայոց" կը համապատասխանէ Այրարատ նահանգին, եւ ըստ այնմ ալ զայն կը թարգմանէ „Zentralprovinz" (Ararat und Masis, S. 21): Վասն զի Փաւստոսի մէջ քանի անգամ որ "միջնաշխարհ" կու գայ միշտ հակադրուած է Հայաստանի սահմանագաւառներուն, Հմմտ. Փաւստոս, էջ 116, 119, 121, եւ 161. ուրեմն "միջնաշխարհ" պիտի նշանակէ երկրին կեդրոնական մասը կազմող նահանգները, այսինքն՝ Այրարատ, Բարձր Հայք Տարօն եւն: "Եւ ինքն գայր հասանէր ի միջնաշխարհն Հայոց ի գաւառն Այրարատու" խօսքին իմաստն է. իսկ ինքն

հետեւի, որ նաեւ զԱրուաստան Հայաստանի մաս կը համարէր։ Նոյնպէս Փաւստոսի առջեւ ծանօթ չէին մնացած Անանունի մէջ գծուած Հայաստանի հիւսիսային եւ արեւելեան սահմանները. այս տեսակէտէ շատ հետաքրքրական են Փաւստոսի նախարարաց Արշակ Թագաւորէն հեռանալէն վերջը Մուշեղ սպարապետին ձեռօք նուաճուելուն վրայ գրած գլուխները (Հմմտ. էջ 175—178)։ Սեբէոսի Հայաստանի հին սահմանները (էջ 37) ապահով Անանունէն առնուած են. "զի առ նախնեաւքն իսկ Ջեղ լեալ է" նախադասութիւնը անոր ակնարկութիւնն է։ Սեբէոսի "Նորշիրական"ի վրայ յեցած՝ Անանունի "Նոր-Շիրակ"ը կ'ուղղենք "Նորշիրական" համաձայն Փաւստոսի ուղղագրութեան (Հմմտ. էջ 135, 175)։

Սակայն երկուքին մէջ եղած եթէ ոչ ամենամեծ գէթ ամենահետաքրքրական համաձայնութիւնը Փաւստոսի "Սարարադի եւ Անանունի" Արարադի եւ անոնց յարակից պատմուածքներուն մէջն է։

| Անանուն | Փաւստոս |
| --- | --- |
| Արդ՝ այս են անուանք ազգածինն արանց անդրանկելոցն ի Բաբելոնէ. գնացելոցն ընդ կողմանս հիւսիսոյ յերկիրն Արարադայ։ Ջի չուեալ խաղաց գնաց | Ջայնու ժամանակաւ խաղաց գնաց մեծ եպիսկոպոսն Մծբնացւոց . . . որում անուն Յակովբ, փախանակաւ զգաւն Պարսիկ կոչէր, այր ընտրեալ |

եկաւ Հայոց միջնաշխարհին Այրարատ գաւառը կամ նահանգը։

Հայկն ի Բաբելոնէ կնաւն եւ որդւովքն եւ ամենայն ազխիւն հանդերձ։ Եւ չուգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ ի տանն որ ի լեռնոտին, ուր զառաջինն շինեալ էր Զրուանայ հաւրն [եւ] եղբարքն հանդերձ:

յԱստուծոյ, յիւրմէ քաղաքէ անտի գալ հաստանել ի լերինս Հայոց, ի լեառն Սարարադայ ի սահմանս այրարատեան տէրութեանն ի գաւառն Կորդուաց: . . . Սա եկեալ ցանկացեալ փափաքեալ մեծաւ տենչանօք աղաչէր զԱստուած տեսանել զփրկական զտապանն նոյեան շինուածոյն, զի յայս լերին հանգեաւ նա ի ջրհեղեղէն, 19-20:

Առաջին նայուածքով մարդ կը կարծէ թէ հատուածներուս համաձայնութեան կէտերը այնչափ չնչին են, որ իբրեւ ապացոյց յառաջ բերել չարժեր. բայց մտադիր ակնարկ մը խնդրոյն ուրիշ գոյն կու տայ։ Նախ՝ թէ Փաւստոսի Սարարադ լեռը Անանունի Արարադ երկրին մէջ կ'իյնայ, յայտնի է անկից, որ Անանուն զԱրարադ կը դնէ Հարքի հարաւային կողմերը (էջ 2) եւ Կորդուաց նահանգը կամ Սարարադայ երկիրը ճիշտ Հարքի հարաւային կողմերն է։ Երկրորդ՝ որ խնդրոյս համար վճռական ապացոյց մըն է, Անանունը Արարատայ հետ այնպիսի պատմական իրողութիւն մը կը կապէ, որ կու գայ կը միանայ Փաւստոսի Նոյեան տապանին մասին պատմածներուն հետ։ Անանունի համաձայն Հայկ Բաբելոնէն ելլելով՝ կու գայ կը բնակի Արարադայ լերան մը ստորոտը այն տան մէջ, զոր իւր հայրը Զրուան եղբարց հետ

ի միասին շինած էր։ Արդ Զրուան հոս պատմագիտօրէն կը համապատասխանէ Յաբեթի եւ Հայոց նախահայրին ալ քիչ մը վար արդէն կ՚անուանուի “Հայկն Յաբեթայն„ (էջ 4), ուրեմն Անանուն լռելեայն փաւստոսի հետ կ՚ընդունի թէ Հայկ իր բնակարանը հաստատած էր այն լերան ստորոտը, որ երբեմն Նոյեան տապանին իջավայրը եղած էր։

Դիտելի կէտ մըն է նաեւ “Սարարատ„ եւ “Արարատ„ ուղղագրութիւնը։ Այս երկու՝ իրենց աւանդութեամբը միայն փաւստոսի եւ Անանունի առանձնայատուկ անունները, հակառակ Ս. Գրոց եւ ընդհանրապէս հայ մատենագրութեան սովորական ուղղագրութեան, ամէն անգամուն քով կը տառադարձուին, մինչդեռ Հայաստանի համանուն նահանգը “Արարատ„ միշտ “Այրարատ„։

Մեր կարծեօք՝ ինչպէս արդէն ցուցըցած ենք Յուշարձանի մէջ հրատարակուած մեր՝ “Սարարա՞դ թէ Արարադ„ աշխատութեան մէջ, նոյն իսկ փաւստոսի “Սարարադ„ը նախնաբար “Արարադ„ էր, զոր հաստատած էինք գլխաւորաբար այն սկզբամբ թէ քանի որ Անանունի վերոյիշեալ հատուածը փաւստոսի Առաջին պատմութեան կը վերաբերի, եւ այն ալ ստոյգ է, որ “Արարադ„ը թէ իր Նոյեան տապանին աւանդութեամբը եւ թէ իբրեւ աշխարհագրական անուն ծննդոց գրքէն կախում ունի, “Սարարադ„ը, որ հոս նոյնպէս շնորհիւ Ս. Գրոց ազդեցութեան մեզի կը ներ-

կայանայ իբրեւ "Արարադ„ երկրին տապանակիր լեռը, պէտք է ուղղել "Արարաղ„ համաձայն Ս. Գրոց Աղեքսանդրեան թարգմանութեան եւ քանի մը Ս. Հարց ըմբռման։ Դաշինքի (1912, թիւ 842) Ցուշարձանի նուիրած մէկ քննադատականին մէջ մեր այս տեսութիւնը անհաւանական գտնուած է եւ կը խոստացուի այս մասին գրել ուրիշ առթիւ. Կը սպասենք խոստման գործադրութեան։

Հոս մեր ցուցումնաբերութեանց շարքը կը վերջանայ։ Անանունի խնդիրը՝ այլ եւս լուծուած է. եւ անոր հետ եթէ չենք սխալիր, լուծուած է միանգամայն Խորենացւոյ գլխաւոր աղբեր խնդիրը։ Խորենացւոյ "Մարաբբաս Կատինա„ն Փաւստոս է, որուն հետ սակայն վարուած է այնպէս, ինչպէս անոր Բ. Պատմութեան հետ. ստրկօրէն կապուած է, բայց ստրուկ չնկատուելու վախէն, մանաւանդ թէ ինքն իրեն շատ աւելի մեծ հեղինակութիւն մը տալու տենչանքէն, Փաւստոսէն պատմուածը միշտ այլափոխած եւ կամ՝ Ց. Դաղբաշեանի լեզուաւ խօսելով, "խարդախած է„։ Երկուքին համեմատական ուսումնասիրութիւնը շատ թաքուն իրողութիւններ հրապարակ պիտի հանէ։

## Քանի մը լուսաւորելի խնդիրներ:

Անանունի դասական հատակոտորներու վրայ խօսած ժամանակ ստիպուած դուրս թողուցինք քանի մը հարցեր, որոնց լուծումը սակայն սերտիւ կապուած է նոյն հատակոտորներուն հետ։ Երեք կէտերու մէջ կարելի է ամփոփել այս

հարցերը։ 1. Մարաբաս Մծուրնացի՞ է թէ Մծբնացի, այսպիսի պատմական անձնաւորութիւն մը եղա՞ծ է եւ կամ իրեն ընծայուած «Պատմութեան, ին գոյութիւնը գէթ հնարաւո՞ր է։ 2. Պատմական ի՞նչ արժէք ունի Ագաթանգեղեայ վերագրուածը։ 3. Փաւստոսի Ա. Պատմութենէն ընդհանրապէս որչափ կտորներ կը պակսին մեզի։ Ագաթանգեղեայ հարցը վերապահելով մեր խոստացած մէկ ուսումնասիրութեան („Հանդ. Ամս.„ 1912, էջ 297) հոս քննութեան կ'առնունք միւս երկու կէտերը։

*1. Մարաբաս Փիլիսոփայ Մծուրնացի.* Խորենացին իւր „կատինա„ն հնարած է Անանունի Մարաբասի „Փիլիսոփայ„ տիտղոսէն (աս. ܚܟܝܡܐ = հէքիմ, իմաստուն). „Մծուրնացի„ն գիտմամբ դուրս ձգած է, բայց որչափ կ'երեւայ զայն կարդացած է „Մծբինացի„ իմաստով, անոր համար ալ զՄարաբաս Մծբինացի կը համարի (Պատմ. էջ՝ 21)։ Իրաւացի՞ է Խորենացւոյ տեսութիւնը. „Եւրոպա„ շաբաթաթերթը (1852 թիւ 61), Baumgartner (ZDMG. 1886, էջ 495), Ն. Մառ (Հանդ. Ամս. 1895, էջ 198), Vetter (Հանդ. Ամս. 1895, էջ 125) կը հաստատեն։ Ուրիշ տեսութիւն ունի Գելցեր. Nötig ist sie (այսինքն՝ eine Conjectur „Մծուրնացւոյ„ für Մծուրնացւոյ) nicht. Mar Abas stammte aus Mžurk = χλίμα Μουσουρων[1], Georg. Cypr. ed. H. Gelzer, S. 49, 183.

---

[1] Ցեղւոյ մասին հմմտ. նաեւ Հ. Հիւբշման. Հայոց Հին տեղւոյ անունները, Վիեննա 1907. էջ 128—129։

Բայց մենք ի հաստատութիւն գրելոցս կարծեաց Գէորգ Կիպրացիէն աւելի լսելու ենք ինքնին իսկ Փաւստոսի խօսքերը. “Ապա գնայր մարզպետն Հայր ի սուրբ տեղեացն եւ էջ յափն գետոյն հոսանացն Եփրատու, ի հովիտն Թանձրախուռն անտառին, ի գետախառնունսն երկուց գետոցն, ի Թաւութ խարձիցն մամխեացն, որ ի տեղւոջն ի հնոցն իմն շինած քաղաք՝ զոր շինեալ Սանատրուկ արքայի, ուրում անուն տեղւոյն Մծուրք կոչի: Ուրիշ տեղ մը. “Ջի ընդ Աղձնիս, եւ ընդ Ծոփս Մեծ, ընդ Անգեղ տուն եւ ընդ գաւառն Անձիտայ, ընդ Ծոփս Շահունոյ, ընդ Մզուր գաւառն եւ ընդ Դարանաղէ, ընդ Եկեղեաց, զկողմանս այնց գաւառացն Շապուհ թագաւորն Պարսից հանդերձ անթիւ զօրօքն ասպատակել՝ հեղեալ ծաւալէր բազմութեամբ իբրեւ զջուրս բազումս„. էջ 120: Փաւստոսի Մծուրքի եւ Մզուրի մէջ նրբին առնչութիւն մը կայ. Մծուրք Մզուր գաւառին քաղաքներէն մէկն է: Բայց Փաւստոսի Մծուրքը սերտիւ կապուած է նաեւ Անանունի “Մծուրնացւոյն„ հետ: Փաւստոսի Մծուրքը շինած է Սանատրուկ, եւ Մարաբաս ալ իւր “մատեան„ը դրոշմուած կը գտնէ “յապարանսն Սանատրուկ արքայի„. Մծուրքը “ի հնոց իմն շինած քաղաք„ այսինքն՝ կիսաւեր քաղաք մըն է, եւ Մարաբաս իր պատմութիւնը “եգիտ դրոշմեալ ի վերայ արձանի ... ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն„: Ասկից կը տեսնուի, որ “Մծուրնա-

ցուցն„ տեղ սրբագրելու է մանաւանդ Մծբինը՝ Մծուրք։ Դժբախտաբար մեր ձեռքը հազիւ քանի մը ձեռագիրներ ունինք, որոնց հնագոյնը ԺԷ. րդ դարէն անդին չ՚անցնիր։ Ո՛վ գիտէ Սեբէոսի ո՛րչափ ձեռագիրներ ծածկուած կը մնան այսօր փոշիներու մէջ. այս ձեռագիրներէն կախուած է ոչ միայն «Մծբինի» այլ նաեւ ուրիշ շատ մը կարեւոր խնդիրներու մասին վերջնական վճիռը. օր. համար՝ Անանունը իր ներկայ վիճակին մէջ սկզբանէ Սեբէոսի պատմութեան հետ միացա՞ծ էր թէ յետագայ դարերուն միացաւ. Բաումգարտներ[1] վերջինս աշխատած է ապացուցանել, բայց այսու հանդերձ խնդիրը տակաւին կը մնայ քննելի։

Շատ աւելի կարեւոր խնդիր մըն է ի հարկէ Մարաբասի անձնաւորութիւնը. եղա՞ծ է երբեք այսպիսի պատմագիր մը։ Մատենագիտութեան (Literatur) մատենադարան մը կազմուած է Մարաբասի վրայ, բայց ցայժմ բանասիրութիւնը չկրցաւ վճռական խօսք մը ըսել այս մասին. 10—15 տարի յառաջ գտնուած Մարաբաս Քաղդեացւոյ պատմութեան քաղուածոյքին յառաջ բերած աղմուկը[2] համապատասխան արդիւնք մը չունեցաւ, եւ Chabotի յօդուածէն[3] վերջը այլ եւս

1 ZDMG. 1886, էջ 466—67. ծան.։

2 «Հանդ. Ամս.» 1897։ Արրա. 1903, էջ 534, 621։ Բզմ. 1896։ Арабское извлеченіе изъ Сирійской Хроники Марибаса, 1902, արտատպ Записк. Восточ. եւն։

3 La pretendu chronique de Maribas le. Chaldéen (Extrait du J. Asiatique). Paris 1905.

անոր վրայ յենուլ կարելի չէ։ Յամենայն դէպս Փաւստոս իւր Ա. Պատմութիւնը գրած ժամանակ ունեցած է աղբիւր մը, եւ այն՝ ասորի աղբիւր մը։ Անանունի մէջ շատ զգալի հետքեր կը նշմարուին Ս. Գրոց եւ Եւսեբիոսի ազդեցութեան[1], բայց անհամեմատ աւելի է ասորական ազդեցութիւնը. Նոյեան տապանը իջած է Արարադայ, այսինքն՝ Կորդուաց երկրին մէկ լերան վրայ, նոյն լերան տակը Հայկայ հայրը՝ այսինքն՝ հաւր Յարբեթ տուն մը շինած է, որուն մէջ անցուցած է Հայկ իւր մանկութիւնը. Հայկ Բաբելոն կ'երթայ, բայց չուզելով երկրպագութիւն ընել Բէլայ, կը դառնայ վերստին Կորդուաց երկիրը. պատերազմի կ'ելլէ Բէլայ դէմ, իւր թոռներէն մէկը կ'անուանուի Կադմոս, որուն կու տայ Կորդուաց երկիրը. իսկ սերունդներուն մէջ կը գտնուին Արամ եւ Հարմա։ Արա Գեղեցիկին սիրահարն է Շամիրամ թագուհին, որ ասորական աստուածութիւն է եւ Հայերը մինչեւ Սենեքերիմի մահը Ասորեստանեայց այսինքն՝ Ասորւոց իշխանութեան տակ կ'իյնան։ Ս. Գրոց ազդեցութիւնը պատմութեանս մէջ չենք կրնար ուրանալ, բայց նոյն իսկ Ս. Գրոց պատմական տարրները մտած են Անանունի մէջ նոյն ժամանակուան ասորի եկեղեցական մատենագիրներուն մեկնութիւններուն համաձայն։ Ուստի եւ Փաւստոս գլխաւորաբար իբրեւ առաջնորդի դեր կատարող ասորի աղբիւր մը

---

1 Գր. Խալաթեանց Армянскій эпосъ, էջ 85—89։

ունեցած է, խնդիր չէ վերցընել: Այս աղբիւրը Մարաբա՞ս է թէ Ափրիկանոս կամ Բարդեծան եւ կամ սորի ուրիշ մատենագիր մը՝ „ignoramus, եթէ ոչ ‚ignorabimus‘“: Երկու երեք տարի յառաջ արդէն լսած էինք, որ Պրոֆ. Մարկուարտ մենագրութիւն մը[1] պատրաստած է Մարաբասի վրայ. ցաւալի է, որ ցայժմ լոյս չտեսաւ այս կարեւոր ուսումնասիրութիւնը: Յարգ. Ուսուցչապետին աշխատութիւնները միշտ նորութիւն մը դրած են հրապարակի վրայ եւ ապահով ենք որ այս մենագրութիւնը բացառութիւն պիտի չկազմէ:

*Փաւստոսի Ա. Պատմութեան սկզբնագիրը.* — Քանի որ Փաւստոսի Մարաբասեան պատմութենէն այսօր միայն հատակտորներ ունինք, բնականաբար հետաքրքրական էր գիտնալ թէ սկզբնագիրը ընդհանրապէս որչափ էր: Այս հարցին սպառիչ պատասխան մը տալ կարելի չէ. սակայն բովանդակութիւնը գէթ իր ընդհանուր գծերուն մէջ որոշելու աշխատելով, կարծենք թէ բանասիրօրէն աւելորդ գործի մը ձեռնարկած չենք ըլլար: Ժամանակամիջոցին երկու եզրները մեզի ծանօթ են արդէն. Փաւստոս իր Ա. Պատմութիւնը սկսած է ջրհեղեղէն, գէթ այս մասին յայտնի ակնարկութիւններ ունինք, եւ հասցուցած է մինչեւ Սանատրուկ թագաւորը, որ ըստ իրեն՝ ժամանա-

---

1 Պրոֆ. Մարկուարտի եզրակացութիւնը յայտնի է, Հմմտ. Հանդ. Ամս. 1912, էջ 542, Ծան. 3: Հետաքրքրական են առ այն ապացոյցները:

կակից էր Քրիստոսի։ Ինչպէս հատակոտորներէն կը տեսնուի, Փաւստոս իւր պատմութեան մէջ առած է նաեւ Պարթեւաց պատմութիւնը. յառաջաբանին “զամն եւ զաւուրս հինգ թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց„ խօսքն ալ նոյնը կը հաստատէ։ Բայց հոս մեր առջեւ փոքրիկ դժուարութիւն մը կ'ելլէ. ի՞նչ իմաստով հասկընալու է “զամն եւ զաւուրս հինգ թագաւորացն„. հինգ հայ եւ պարթեւ թագաւորներո՞ւ թէ հինգ հայ եւ հինգ պարթեւ թագաւորներու. Ն. Մառ առաջինը կը պաշտպանէ (“Հանդ. Ամս. 1895, էջ 198). խմբագիրն ալ որչափ կ'երեւայ Ն. Մառէն տարբեր տեսութիւն մը չունէր, երբ կը գրէր “զամն եւ զաւուրս հինգ թագաւորացն յիշատակելով„։ Կ'ընդունինք, որ Փաւստոս Պարթեւաց առաջին թագաւորը կամ թագաւորները միանգամայն Հայոց թագաւորները կը համարէր, սակայն ասկից չի հետեւիր որ կարծուած արձանագրութեան բովանդակութիւնն ըլլար միայն Քաջ Արշակայ, Մեծ Արշակայ, Աշնաշի եւ հայ արշակունի Արշակ եւ Արշակ Բ. թագաւորներուն պատմութիւնն։

Փաւստոս իւր Բ. պատմութեան մէջ բացայայտ ըսած է թէ բաց ժամանաշրջան չկայ իւր պատմութեանց մէջ, մինչդեռ այս „Theorie“ին հետեւելով, կ'ունենանք մենք մերձաւորապէս 90—100 տարիներու բաց ժամանակ մը։ Ըստ իս մեկնութեան միւս եղանակն ալ անհաւանական է, վասն զի յաջորդ հատուածը,

որուն "գրեցի ի վերայ արձանիս այսորիկ" ը յայտնի վկայ է անոր նախընթացին շարունակութիւն ըլլալուն, բոլորովին կը հակառակի նոյն մեկնութեան։ Արձանագիրը կը գրէ ոչ թէ "զամս հինգ", այլ "առաջին թագաւորացն"։ Լաւագոյն չէ՞ ուրեմն կարդալ "զամս եւ զաւուրս հին թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց". "Պարթեւաց" յաջորդ հատուածին մէջ դուրս ինկած է, որ եւ հատակոտորի մը համար անկարելութիւն չէ։

Մեծ սխալ է խմբագրին հետ կարծելը թէ գտնուած արձանագրութեան պատճէնը կը սկսէր Պարթեւաց պատմութենէն, իսկ Հայկազեան ըսուած պատմութիւնը Անանուն աւելցուցած է։ Եթէ Փաւստոս հեղինակութեան մը պէտք ունէր, զայն ընդունելու է մանաւանդ Հայկազեան շրջանին համար։ Անշուշտ հատակոտորներուն երկու մասի բաժանումը առանց պատճառի չէ. այդ բաժանումը Փաւստոսի Ա. եւ Բ. Դպրութեանց մնացորդներն մեզի կը ներկայացնէ. Խորենացին ալ ճիշտ միեւնոյն բաժանումը ունի[1]։ Այս տեսակէտով անհիմն են-

---

1 Խորենացին ապահով գիտէր Փաւստոսի երկու պատմութիւններուն առեղծուածը։ Իր Գ. Գրքին ամբողջ ընթացքին մէջ զանիկա չյիշելը երկայն ատեն տեսակ մը պատմական խորհուրդ նկատուեցաւ, բայց Բագրատունեաց ազգաբանութեան մէջ Փաւստոսի վրայ ըրած յարձակումները հակառակ իր կամքին իրողութիւնը ծածկող վարագոյրը կը պատռեն արդէն։ Հետաքրքրական է տեսնել թէ Խորենացին ինչ աստիճանի սերտութեամբ հետեւած է Փաւստոսի նոյն իսկ իր պատմութեան բաժանման մէջ։ ա. Խորենացին իր պատմութիւնը երեք մասի բաժնած է,

Թագրութիւն մը չենք ըներ, եթէ ըսենք թէ երկու Դպրութիւններուն գէթ չորսին երկուքը կը պակսի մեզի, պակասը զգալի է մանաւանդ Արա Գեղեցիկէն եւ առաջին Հայ Արշակունի Թագաւորէն վերջը։ Կարելի՞ էր որ Փաւստոս Ի. եւ Ջ.րդ դարերուն վրայէն լռութեամբ անցնէր, երբ Եսայեայ եւ մանաւանդ Երեմեայի մարգարէութիւններուն մէջ ենթադրական պատմութեան մը բաւականաչափ նիւթ ունէր. Սենեքերիմայ ակնարկութիւնը եւ Բ. Պատմութեան “այրարատեան թագաւորութեան„ աստուածաշնչեան բացատրութիւնը շատ բան կը յայտնեն։

Բագրատունեաց եւ Մամիկոնեանց ազգաբանութիւնները պակասաւոր չեն. բայց որչափ կ'երեւայ Մամիկոնեանց մասին ժամանակը կանխած է՝ զետեղելով Ա. Պատմութեան մէջ անոնց ազգաբանութիւնը, որուն իսկական տեղը այժմ որոշել կարելի չէ։ Շատ հաւանական է, որ Փաւստոս գրած ըլլար նաեւ Հայ Նախարարութեանց գէթ նշանաւորներուն ազգաբանութիւնը. անշուշտ Բագրատունեաց եւ Մամիկոնեանց պէս անոնք ալ իրենց ցեղային

---

Փաւստոսի պատմութիւնն ալ ըստ նիւթին երեք մաս ունի. Բ. Փաւստոս իւր պատմութեան այն շրջանը, զոր ուրիշները գրած ըլլալուն՝ ինքը համառօտիւ կ'անցնի վրայէն, կ'անուանէ “Միջին պատմութիւն„, իսկ Խորենացին իր Բ. Գիրքը “Միջակ պատմութիւն„. Գ. Խորենացին ըստ ինքեան պէտք էր Գ. Գիրքը սկսիլ Տրդատէն եւ Գրիգոր Լուսաւորչէն, վասն զի նոր դարագլուխը անոնցմով կը սկսի, բայց ինչ որ Փաւստոս վերոյիշեալ պատճառին համար ստիպուած էր ընել, նոյնը ըրած է, այսինքն սկսած է երկուքին մահուընէն եւ կամ Խոսրով Բ.ին գահակալութենէն։

աւանդութիւններն ունէին, որոնց Հայոց համար շատ աւելի հետաքրքրական եւ կարեւոր էին քան Պարթեւաց ազգաբանութիւնը եւ պատմութիւնը։ Եւ՝ անոնց հետ կորսուած են նաեւ նոյն աւանդութիւնները, որոնք իբրեւ պատմութիւն եթէ արժէք չունէին, գէթ իբրեւ պատմութեան աղբիւր մեծ նշանակութիւն կրնային ունենալ։ Խորենացւոյ նախարարական ազգաբանութեանց վրայ կարելի չէ յենուլ, վասն զի Խորենացին Անանունի սկզբնագիրը չէ տեսած, իսկ Թ. դարուն մէջ Ե. դարուն իսկական աւանդութիւնները գտնել կարելի չէր։

Ապահով կորսուածներուն ամենամեծ մասը կը կազմէր Սանատրուկի եւ առաջին Հայ Արշակունի թագաւորին մէջ եղած շրջանին պատմութիւնը, որ բոլորովին անհետացած է։ Ունինք այժմ միայն Հայ եւ պարթեւ թագաւորներու ցանկը, բայց թէ Փաւստոս իրօք գրած է այս շրջանին պատմութիւնը, կը ցուցնեն Բ. Պատմութեան Տիգրան Մեծին կեանքէն յառաջ բերած ինչ ինչ մանրամասնութիւնները։ Կարելի է որ Հայ թագաւորաց աղիւսակը երկու Հայ արշակունի ճիւղերու աղիւսակն ըլլայ, ինչպէս Ն. Մառ կ'աշխատի ցուցնել (Հանդ. Ամս. 1895, էջ 298), բայց զայն Փաւստոսի Ա. Պատմութեան մասը չենք կրնար համարել, առ առաւելն անոր գլուխներու ցանկէն հնարուած ըլլալու է։

---

*Հետագայ հրատարակութիւնս պատրաստուած է երկու տպագրութիւններուն եւ մեր թիւ* **52** *եւ* **86** *ձեռագիրներուն վրայէն: Մեր թիւ* **52**-*ը 1851ին օրինակուած է Էջմիածնի օրինակին մէկ ընդօրինակութենէն, իսկ թիւ* **86** *ը ըստ ինքեան ձեռագիր չէ, այլ թիւ* **52**-*ին եւ Մարմաշինու օրինակին “Համեմատութիւն„ն է, որուն մէջ մի առ մի նշանակուած են Մարմաշինու օրինակին մերինէն տարբերութիւնները, որոնք համեմատաբար մեծաքանակ են: Երկու ձեռագրաց մասին աւելի մանրամասն՝ տես Տաշեան Ցուցակ, թիւ 52 եւ 86:*

---

## *Փաւստոսի*

## *Ա. Պատմութեան Հատակոտորները:*

—

### Յառաջաբան։

. . . . . . . . . . . . . . .[1]։

Արդ[2] Հայելով ի մատեանն[3] Մարաբայ
Փիլիսոփայի Մծուրնացւոյ, զոր եգիտ դրոշմեալ
ի վերայ արձանի ի Մծբին[4] քաղաքի՝ յապա-
րանսն[5] Սանատրուկ արքայի Հանդէպ դրան
արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի 5
արքունական կայենիցն[6] . . . . . .։ Քանզի զսիւնս
տաճարին այնորիկ խնդրեալ ի դուռն արքային
Պարսից, եւ բացեալ զաւերածն վասն սեանցն

---

1 Յաջորդ Հատուածէն յառաջ պակաս մը կ'ենթադրենք. Հայ պատմագիրները այսչափ չուտով՝ ex abrupto իրենց նիւթին անցնելու սովորութիւն չունին։

2 Բոլոր օրինակները "Անդ", բայց ինչպէս յաջորդ պարբերութիւններուն սկզբնաւորութիւններէն կը տեսնուի "Արդ" պէտք ըլլայ։

3 Մեր օր. "ի մատեանս", էջ 3։

4 Այս մասին տես վերը էջ 64։

5 Մեր օր. "յապարանս" էջ 3։

6 Պակասաւոր Հատուածիս նախնական ձեւն էր թերեւս. "Արդ Հայելով ի մատեանն Մարաբայ Փիլիսոփայի Մծուրնացւոյ, գրեցից զնախնեացն զպատմութիւնս, զոր եգիտ դրոշմեալ" եւն։

ընդ դիպան[1] արձանագրին դրոշմեալ ի վերայ վիմի զամս եւ զաւուրս Հինգ[2] Թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց յունարէն դպրութեամբ[3] . . . . . . . ։

“Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի ի վերայ արձանիս այսորիկ իմով ձեռամբս զամս առաջին Թագաւորացն Հայոց, Հրամանաւ քաջին Տրդատայ՝ առեալ ի դիւանէ արքունի . . . . . . . . . . . ։

## Ա. Դպրութիւն։

. . . . . . . . . . . . . . ։

Արդ՝ այս է Հայկն՝ որ ծնաւ զԱրամանեակ զորդի իւր ի Բաբելոն։ Եւ ծնաւ Արամանեակ ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արամայիս։ Եւ ծնաւ Արամայիս ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Ամասիա։ Եւ ծնաւ Ամասիա ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Գեղամ։ Եւ ծնաւ Գեղամ ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Հարմա։ Եւ ծնաւ Հարմա ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արամ։ Եւ ծնաւ Արամ ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արայն գեղեցիկ։

---

1 Համ. “ըստ դիպա— արձանագրի—„ էջ 1. Հմմտ. նաեւ վերը էջ 68։

2 Տե՛ս վերը էջ 68։

3 Շարունակութիւնը՝ “զոր իմ գտեալ ի Միջագետս ի Նորին աշակերտացն, կամեցայ ձեզ զրուցակարգել, քանզի այսու ունէր զվերնագիրն այսպէս„. այս մասին էջ 68։

Արդ՝ այս են անուանք ազգածինն արանց անդրանկելոցն[1] ի Բաբելոն, գնացելոցն ընդ կողմանս հիւսիսոյ յերկիրն Արարադայ[2]։ Զի չուեաց խաղաց գնաց Հայկն ի Բաբելոնէ[3] կնաւն եւ որդւովքն եւ ամենայն աղխիւն հանդերձ։ Եւ չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ ի տանն որ ի լեռնոտինն, զոր[4] զառաջին շինեալ էր Զրուանայ հաւրն՝ [եւ][5] եղբարրքն հանդերձ։ Եւ ապա ետ զնա Հայկն կալուած ժառանգութեան[6] Կադմեայ թոռին իւրում որդւոյն Արամանեկայ[7]։ Եւ ինքն չուեաց գնաց անտի եւս ի հիւսիսակողմն եւ չոգաւ բնակեցաւ ի բարձրաւանդ դաշտավայրի միոջ. եւ կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք, յանուն Հարցն։ Իսկ երկիրն ըստ նմին պատշաճի[8] կոչեցաւ անուն Հայք՝ որ են հայազամք հանդերձ։

Եւ արդ՝ այս Հայկ հզաւր զաւրութեամբ եւ բարի անձամբ եւ կորովի աղեղամբ՝ եւ մարտիկ յոյժ։ Յայնմ ժամանակի թագաւորեաց ի

---

1 Մեր. օր.ին լուսանցքին վրայ՝ “անդ անկելոցն„ էջ 4. ուղիղը “անդրանկելոցն„ է. բայց եթէ Փաւստոս չըլլար գրողը, շատ դժուարին պիտի ըլլար մեկնել թէ ինչպէս կրնայ Հայկ իր սերնդեան ութերորդ շառաւիղին հետ Բաբելոնէն ելլել եւ Հայաստան գալ։

2 Համ. “Արարատայ„ էջ 1։

3 Ցպգրք. եւ Մեր օր. “ի Բաբէլոնէ„ Համ. “ի Բաբելոնէ„։

4 Բոլոր օր. “որ„. գրինք ըստ իմաստին։

5 Յայտնապէս աւելորդ։

6 Համ. “ժառանգութեանն„, էջ 1։

7 Համ. “Արամանեակայ„, էջ 1։

8 “Ըստ նմին պատշաճի„ — “ըստ նմին օրինակի„ Հմմտ. Ագաթ. էջ 26 “ըստ պատգամին պատշաճի„։

Բաբելոն որսորդ Հսկայ[1] Բէլն Տիտանեան, ճոխն չաստուածացեալ, որոյ հզաւր զաւրութեամբ եւ սաստիկ յոյժ գեղ պարանոցի իւրոյ։ Եւ էր իշխան ամենայն ազգաց՝ որ սփռեցան ի վերայ երեսաց ամենայն երկրի։ Որոյ արարեալ առ աչաւք կախարդութեամբ հնարս՝ եւ հրամանս թագաւորականս ամենայն ազգաց. եւ հպարտութեամբ ամբարտաւանութեան իւրոյ կանգնեաց զպատկերն իւր, եւ ետ երկրպագանել իբրեւ աստուծոյ, եւ զոհս մատուցանել։ Եւ վաղվաղակի կատարէին ամենայն ազգքն զհրամանս նորա. բայց մի ոմն Հայկ անուն[2] նահապետ ազգացն ոչ հնազանդեցաւ ի ծառայութիւն նորա, եւ ոչ մեծարէր զնա աստուածաւրէն չքով։ Եւ էր անուն նորա Հայկ, ընդ որում ծնաւ յարքային[3] Բէլայ ոխութիւն մեծ։ Եւ զաւրաժողով լինի Բէլ արքայ ի Բաբելոն եւ դիմէ գնայ ի վերայ Հայկայ սպանանել զնա։ Գայ հասանէ յերկիրն Արարադայ ի տունն՝ որ էր նոցա հայրենի՝ որ[4] շինեալն էր ի լեռնոտին. եւ Կադմոս փախստական գնաց ի Հարք առ Հայր իւր ազդ առնել նմա, եւ ասէ. Դիմեալ

---

1 Մեր օր. “Հսկայն„, էջ 4։

2 Փաւստոսի պատմելու մէկ առանձնայատուկ ձեւը. “մի ոմն Հայկ անուն„, իբրեւ թէ ասկէ յառաջ Հայկայ վրայ ամենեւին խօսած չըլլար. Հմմտ. էջ 43։

3 Համ. “արքայէ„, էջ 1. միւս բոլոր օր. “արքային„. դրինք ըստ իմաստին։

4 “զոր շինեալն„ էր (Զրուան հայրն Հայկայ). բայց ըստ իս աւելի հաւանական է՝ որ շինեալն էր — որ շինուած էր։

գայ Բէլ արքայ ի վերայ քո, եկն եհաս մինչեւ ի տուն անդր, եւ ես կնաւ իմով եւ որդւովք ահաւասիկ կամ փախստական։

Առնու Հայկն զԱրամենակ եւ զԿադմոս զորդի իւր[1]. եւ զորդիս նոցա եւ զորդիս եւթանեցունց դստերաց իւրոց, արս հսկայս եւ[2] նուազունս թուով։ Եւ ի դիմի հարկանի Բէլայ արքայի, եւ ոչ կարաց զդէմ ունել բազմութեան արանց հսկայից սպառազինաց, [։ Անդ ի դիմի հարկանի Հայկն Բէլայ][3] եւ կամեցաւ ըմբռնել զնա Բէլ ի բուռն իւր։ Խոյս ետ Հայկն յերեսաց նորա, եւ գնայր նա փախստական, եւ Բէլ զհետ նորա երթայր պնդագոյնս[4] հանդերձ զինակրաւն իւրով։ Զտեղի կալաւ Հայկն, եւ ասէ ցնա. “Զի՞ պնդեալ գաս զհետ իմ. դարձիր անդրէն ի տեղի քո՝ զի մի՛ մեռանիցիս այսաւր ի ձեռաց իմոց. քանզի ո՛չ վրիպի նետ իմ իւիք„[5]։ Պատասխանի ետ Բէլ եւ ասէ. “Վասն այնորիկ՝ զի մի՛ անկցիս ի ձեռս մանկտւոյ իմոյ եւ մեռանիցիս, այլ ե՛կ ի ձեռս իմ, եւ կեա՛ց ի տան իմում խաղաղութեամբ, ունելով ի գործս զմանկունս ի տան իմոյ զօրսականս„[6]։

---

1 Այսինքն՝ “Առնու Հայկն զԱրամենակ եւ զԿադմոս զորդի իւր (= Արամանեկայ . . .)։

2 Մեր օր.ին մէջ չկայ, էջ 5։

3 Ապահովապէս նախընթաց նոյնիմաստ տողին կրկնութիւն։

4 Տպգրք. “պնդագոյն„. Մեր օր. “պնդագոյնս„, էջ 5։

5 Տպգրք. “ոչ վրիպի նետ իմ իժի... ուղղագոյն է Համ. “իւ—իւ„ էջ 1։

6 Վերջին նախադասութեանս մէջ ձեռք մտած է, չարադասութիւնը ոչ դասական։

Պատասխանի ետ Նմա Հայկն եւ ասէ. «Ձուն ես դու եւ յերամակէ շանց՝ դու եւ ժողովուրդ քո։ Եւ[1] վասն այնորիկ Թափեցի՛ց իսկ այսաւր ի քեզ զկապարճս իմ»։ Եւ արքայն Տիտանեան սպառազինեալ[2] եւ վստահացեալ ի կուռ սպառազինութիւն անձին իւրոյ։ Եւ Հայկն Արեթայն մերձենայր եւ ունէր ի ձեռին իւրում զաղեղն, որպէս հեծան հզաւր մայրափայտեայ։ Եւ Հայկին զտեղի կալեալ պատրաստի ընդդէմ Նորա աղեղամբ։ Եւ կանգնէ զկապարճսն ի գետնոյ ընդ ինքեան յաղեղն[3] սկայաւրէն կամարին, եւ ընդ գիրկս մտեալ զաւրութեամբ հարկանէ Նետիւ զտախտակս, եւ ընդ պղնձի վահանն ի Թափ անցուցանէ ընդ մսեղէն արձանն յերկիր խարսխեալ վտարեալ զնետն[4] եւ վաղվաղակի յերկիր կործանեալ զաստուածակարծեալ[5] հսկայն, եւ զաւրք Նորա փախստական լինէին. Եւ Նոքա զհետ մտեալ Թափեցին ի Նոցանէ երամակս ձիոց եւ ջորեաց եւ ուղտուց։

---

1 Համ. մէջ չկայ, էջ 1։

2 Մեր օր. «սպառնալ», լուսանցքին վրայ՝ «սպառազինեալ», էջ 5։

3 Պետերբ. Ցուցք. էջ 4 եւ Համ. «յա—ղ» սկայօրէն. էջ 1։

4 Բոլոր օր. «նետն», գրինք ըստ իմաստին. «յերկիր խարսխեալ վտարեալ զնետն» — յերկիր բեւեռեալ զնետն. «խարսխեմ» բառին դասական մատենագիրներու քով չենք հանդիպիր. այս պարագան ի հարկէ ապացոյց չի կրնար նկատուիլ անոր դասական չըլլալուն. «վտարեմ» նոյն իմաստով՝ Հմմտ. Փաւստոս էջ 47, 177—8, 198։

5 Բառիս մասին Հմմտ. էջ 32։

Եւ Հայկ դարձաւ ի տեղի իւր[1], եւ չոգաւ կալաւ Հայկն զերկիրն Արարադայ, եւ բնակեցաւ անդէն[2] ազգաւ իւրով մինչեւ ցայժմ։ Եւ ի ժամանակի մահուան իւրոյ ետ զնա կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում, որդւոյ Արամանեկայ եղբաւր Հարմայի[3]?։ Եւ Արամանեկայ հրամայեաց երթալ ի հիւսիսակողմն՝ ուր ինքն իսկ դադարեաց զառաջինն։ Եւ եղեւ յետ մահուանն Հայկայ առ Արամենակ զորդիս իւր եւ զդստերս իւր եւ զարս նոցա, եւ զքորս եւթանեսին եւ զարս նոցա, զուստերս եւ զդստերս նոցա եւ զամենայն աղխ իւր։ Եւ չոգաւ բնակեցաւ անդէն յառաջնումն գաւառին, զոր կոչեցին յանուն Հարց իւրեանց՝ Հարք։ Ապա գնայ անտի եւս Արամենակ ի հիւսիսակողմն եւ երթեալ իջանէ յերկիր մի խորին դաշտավայր, որ կայ ի մէջ բարձրաբերձ լերանց, եւ հատանէ անցանէ ընդ մէջ նորա գետ յորդահոսան, զորով[4] անցեալ Արամենակ բնակէ անդ, եւ շինէ զերկիրն կալուած ժառանգութեան իւրոյ՝ զվայրն լեռնակողմն եւ զառապար։

Զկնի Արամանեկայ՝ որդի նորա Արամայիս

---

1 Պետերբ. Տպգր. "իւրն", էջ 4։

2 Տպգրք. եւ Մէր օր. "անդրէն". Համ. "անդէն", էջ 2։

3 Հարմա Արամենակէն չորս սերունդ վերջը կու գայ, ըստ այսմ Պատկանեանին հարցականը շատ իրաւացի է, ըլլալու է՝ "եղբաւր Արամայիսի"։

4 Տպգրք. եւ Մէր օր. "որով", ուղղելը Համ. "զորով" էջ 2։

շինէ իւր ի վերայ գետեզերն տուն բնակութեան, եւ անուանէ զանուն նորա ըստ անուան իւրոյ Արամայիր։ Եւ որդիք նորա սկսան բազմանալ եւ լնուլ զերկիրն։ Եւ շինեցին գաւառս, մեռաւ եւ Արամայիս, եւ կալաւ զերկիրն որդի նորա Ամասիա[1]։ Եւ ապա յետ նորա Գեղամ։ Մեռաւ Գեղամ՝ եւ տիրեաց որդի նորա Հարմայ. ապա որդի նորա Արամ. ապա որդի նորա Արայն գեղեցիկ, որով անուն իսկ դաշտին այնորիկ կոչեցաւ յանուն Այրարադ։

Եւ Շամիրամ կինն Ասորւոց արքային Նինոսի, քանզի լուաւ վասն գեղեցկութեան նորա [եւ][2] կամեցաւ առնել ընդ նմա բարեկամութիւն, որպէս զի կատարեսցէ զկամս նորա պոռնկութեամբ. քանզի ըստ լրոյ համբաւոյ յոյժ տռփեալ էր ի վերայ անձին եւ գեղոյ նորա գեղեցկութեանն[3]։ Զի ոչ գտանէր յայնմ ժամանակի[4] նման նորա[5] այր ոք ամենեւին՝ այր պատկերաձոխ[6] յղէ առ նա հրեշտակս պատարագաւք եւ կոչէ զնա առ ինքն ի Նինուէ։ Իսկ Արայն ոչ զպատարագն նորա ընկալաւ եւ ոչ յանձն առնու երթալ ի Նինուէ առ Շամիրամ,

---

1 “Մեռաւ եւ Արամայիս եւ կալաւ զերկիրն որդի նորա Ամասիա„՝ Մեր օր.ին մէջ լուսանցքի վրայ. էջ 7։

2 Յայտնապէս աւելորդ։

3 Համ. “Գեղոյ գեղեցկութեանն„, զի, էջ 2։

4 Համ. “ժամանակին„ էջ 2։

5 “Նման նորա„ հակառակ սովորական քերականութեան, ըլլալու է “նման նմա„ (= Զի այլ ոչ գտանէր ուրեք նման նմա ի վերայ երկրի, Փաւստոս)։

6 Բառիս նկատմամբ տե՛ս էջ 32։

ապա առնու զզաւրսն իւր Շամիրամ, եւ գնայ[1] ի վերայ նորա ի Հայս։ Գայ հասանէ ի դաշտն Արայի, եւ տայ պատերազմ ընդ Արայի, հարկանէ զզաւրն, եւ սպանանէ զԱրայ ի պատերազմին[2]։ Եւ հրամայէ Շամիրամ տանել զդի նորա ի վերնատունն ապարանից իւրոց, եւ ասէ. Ես ասացից աստուածոց լիզուլ զվէրս նորա եւ կենդանասցի„։ Իսկ իբրեւ նեխեցաւ դի նորա ի վերնատանն, հրամայեաց գաղտնի ընկենուլ ի վիհ եւ ծածկել։ Եւ զարդարէ զմի զոմն ի հոմանեաց իւրոց այր պատշաճող[3]; եւ համբաւ հանէ զԱրայի[4] լիզուլ աստուածոցն եւ յարուցանել։ Ունի ի ծածուկ եւ ոչ ումեք ի ծանաւթից նորա ցուցանէ զնա, եւ այնպէս հանէ համբաւ Արալեզաց տիկինն Շամիրամ։

Յայնժամ տիրեաց Շամիրամ ի վերայ երկրին Հայաստանեայց եւ յայնմհետէ Ասորեստանեայց թագաւորքն տիրեցին մինչեւ ցմեռանելն[5] Սենեքարիմայ, ապա ապստամբեցին յԱսորւոց թագաւորացն ծառայութենէ։ Եւ տիրէ ի վերայ նոցա Զարեհ որդի որդւոց Արամանեկայ, այր զաւրաւոր եւ կորովի աղեղամբ ապա Արմոգ, ապա Սարհանգ[6], ապա Շաւաշ. ապա Փառնաւազ։

---

1 Համ. "գնաց ի վերայ նորա„, էջ 2։
2 Համ. "ի պատերազմէ„, էջ 2։
3 Ոչ ընտիր, թերեւս յետնամուտ։
4 Մեր օր. "զԱրայէ„, էջ 7։
5 Միհրդ. Տպգր. "ցմեռանելն„, էջ 8։
6 Համ. "Սարհոնգ„, էջ 2։

[Սա ծնաւ զԹագամ եւ զԹագարատ, եւ Թագարատ ծնաւ զԹիրատ, եւ Թիրատ ծնաւ զԱսպատ եւ որդիքն Թագարատայ ժառանգեցին զժառանգութիւնս իւրեանց ի կողմանս Արեւմտից, այսինքն է Անգեղ տուն, վասն զի կոչեցաւ Թագարատ եւ Անգեղ, զոր ի ժամանակին յայնմիկ ազգ բարբարոսացն աստուած կոչեցին[1]։]

Այս Փառնաւազ հնազանդեալ Նաբուգոդոնոսորայ արքայի ի Բաբելոն։ Եւ ապա յայնմհետէ Բաբելացւոց եւ Մարաց թագաւորքն տիրեցին մինչեւ ցԱղեքսանդր Մակեդոնացի, որ զամենայն տիեզերս հնազանդեցոյց ի ծառայութիւն։ Եւ ծառայեցին Մակեդոնացւոց մինչեւ ցապստամբութիւնն Պարթեւաց եւ Մակեդոնացւոց, եւ ցհամբարձումն Արշակունեաց թագաւորութեան[2]։ [Քանզի զայն ճառէ ժամանակագիրն՝ այդպէս որպէս առաջին կայ][3]։

Ի Դամասկոսէ ասեն գնացեալ զՄարսեակն[4] զընդոծինն Աբրահամու փախստական լեալ յԻսահակայ, եւ եկեալ բնակեցաւ առ ոտամբ երկուց լերանցն, որ հային հանդէպ մեծի դաշտին[5] Արայի, յԱրագած կատար եւ ի Գեղ լեառն։ Եւ անուանէ զլերինս[6] յանուն իւր,

---

1 Հաւանականագոյնս խմբագրէն մուծուած. տես էջ 48—49։

2 Միհրդ. Ցպգր. էջ 9 եւ մեր օր. “Թագաւորութեանն„ էջ 8։

3 Այս մասին տես էջ 31։

4 Բոլոր օր. Նոյնպէս։

5 Համ. “դաշտի„ էջ 2։

6 Համ. “զլերինան„ էջ 2։

որում Ազատն կոչեն լեառն[1]։ Եւ լինին նորա երեք որդիք. Փառոխ նա է Եղիազար, եւ Փառոխա՝ կոչեն զտեղի բնակութեանն, եւ Փառականն դաշտ որսոց եւ արշաւանաց նոցին, որ խառնին յազգ Արամենակայ[2]։

Բ. Պատմութիւն։

## Ապստամբութիւն

*Պարթեւաց՝ որ եղեւ ի յայս ժամանակի.*

Եւ եղեւ յետ մահուանն Աղեքսանդրու կայսեր Մակեդոնացւոց, ծառայեցին Պարթեւք Մակեդոնացւոց ամս ԿԱ։ Քանզի թագաւորեաց Սելեւկիոս Նիկանովր[3] ի Բաբելոն ամս ԼԲ։ Անտիոքոս Սոտեր՝ ամս ԺԹ. Անտիոքոս Թէոս՝ ամս Ժ.։ Եւ յամի մետասաներորդի Անտիոքայ արքայի ապստամբեալ ի բաց կացին Պարթեւք ի ծառայութենէ Մակեդոնացւոց։ Եւ թագաւորեաց Արշակ մեծ որդի արքային Թետալացւոց[4] ի Բահլ Շահաստանի յերկիրն Քուշանաց. որում ամենայն ազգք արեւելից եւ հիւսիսոյ

---

1 Մեր օր. էջ 8 այսպէս. Եւ անուանէ զլերինս յանուն իւր, եւ լինին նորա երեք որդիք, Փառոխ՝ նա է Եղիազար, որում Ազատն կոչեն լեառն։

2 Այս վերջին հատուածս (սկսելով "ի Դամասկոսէ..") բոլորովին խանգարուած է. ընդհատ ընդհատ եւ ջղատ խօսքերու կոյտ մըն է, որուն մէջ խմբագրին ձեռքն ալ պակաս չէ. "որում Ազատն կոչեն լեառն". որո՞ւն անունը. Արագածի՞ն, Գեղի՞ն, թէ Մասիսին։

3 Համ. "Նիանոր", էջ 2. Ցուցբք. "Նիանովր", ուղղէ՝ "Նիկանովր"։

4 "Թետալացիք", Հմմտ. էջ 45։

հնազանդեցան ի ծառայութիւն։ Զուեաց խաղաց գնաց Արշակ արքայն ամենայն զաւրաւքն հանդերձ յարեւելից երթալ ի Բաբելոն[1], յառաջին թագաւորաց[ն][2] կալուածսն, զի անդ հաստատեսցէ զթագաւորութիւն իւր. եկն եհաս ի Բաբելոն։ Իսկ Անտիոքոս իբրեւ ետես՝ զի այնչափ[3] բազմութեամբ եկեալ հասեալ էր ի վերայ նորա Արշակ արքայն Պարթեւաց, այնուհետեւ ոչ կարացեալ վստահանալ յիւր զաւրացն բազմութիւն Ե–[4] ի դիմի հարկանել վիրագին[5] այնմիկ, [եւ][6] խոյս ետ յերեսաց նորա. փախեաւ եւ գնաց յԱսիաստան[7]։ Եւ թագաւորէ ի վերայ Ասիաստանու ամս Ե, եւ ապա մի ըստ միոջէ թագաւորեն Մակեդոնացիքն յԱսիաստան ի ժամանակս ինչ։ Եւ Արշակ արքայ հնազանդեցոյց ի ծառայութիւն զԱսորեստանեայս, [որ ըստ Անտիոքայ[8].] եւ զԲաբելացիս եւ զՊարսիկս եւ զՄարս եւ զերկիրն Հայոց մինչեւ ցլեառն մեծ Կապկոհ[9], եւ ի յեզր ծովուն մեծի արեւմտից. Ե– թագաւորէ Արշակ ի Բաբելոն ամս բազումս։

---

1 Մեր օր. Բաբելոն, էջ 9։

2 Չկայ Մեր օր.ին մէջ. անդ։

3 Բոլոր օր. "անչափ„ քիչ մը վարը "իբրեւ ետես Դեմետրիոս, զի այնչափ բազմութեամբ եկն„ եւն։

4 Մեր կողմանէ յաւելուած։

5 Միհրդ.ի մէկ օրինակին մէջ՝ "վայրագին„, էջ 10։

6 Աւելորդ, ինչպէս Մեր օր. կը ցուցնէ (էջ 9), թերեւս նախորդ նախադասութեան "Ե–„ը։

7 Ասիաստան։ Սեբէոսի առանձնայատուկ, թերեւս յետամուտ։

8 "Որ ըստ Անտիոքայ„ աւելորդ։

9 "Կապկոհ„ վարը՝ Կովկաս, թէ որն է սկզբնականը հաստատապէս կարելի չէ ըսել։

Եւ եղեւ յամին հարիւր եւ տասներորդի չորրորդի Արշակայ արքայի Պարթեւաց. ի չորրորդում ամի թագաւորութեան Դեմետրեայ ի վերայ Ասիաստանի եւ Ասորւոց, մինչ Արշակ արքայ գնաց յարեւելս, զաւրաժողով լեալ եւ Դեմետրիոս չոգաւ կալաւ զԲաբելոն: Իբրեւ ետես Դեմեդրիոս, զի այնչափ բազմութեամբ եկն եհաս ի վերայ նորա Արշակ, տեղի ետ նմա եւ գնաց մինչեւ ցԱնտիոք, եւ անդ ճակատեցաւ ընդդէմ Արշակայ ի պատերազմ: Եւ եղեւ պատերազմ մեծ առ Անտիոք քաղաքաւ. Հարկանեն եւ սրբաշունջ[1] առնեն զզաւրն Դեմետրեայ եւ ձերբակալ առնեն զԴեմետրիոս, կապէ զնա Արշակ արքայ ոտիւք եւ ձեռաւք եւ առնու գնայ յարեւելս ի Բահլ Շահաստան: Իբրեւ ետես Անտիոքոս եղբայր Դեմետրեայ եթէ ըմբռնեցաւ Դեմետրիոս ի ձեռս Արշակայ արքայի, ինքն թագաւորէ ի վերայ Ասորւոց եւ Ասիաստանի. զաւրաժողով լինի եւ գնայ ի Բաբելոն զկնի տասն ամի: Ազդ լինի նորին՝ եթէ թագաւորեաց Անտիոքոս եղբայր Դեմետրեայ եւ եկն ի Բաբելոն: Լուծանէ Արշակ զԴեմետրիոս զկնի տասն ամի եւ արձակէ առ եղբայրն, որպէս զի խաւսեսցի ինչ առնել նմա[2] եւ Դեմետրիոս ոչ գնաց առ եղբայրն իւր ի Բաբելոն[3], այլ յԱսիաստան անցանէ: Ապա խաղայ

1 Համ. "Սրբաջինջ„ էջ 2. երկուքն ալ հնարաւոր, ինչպէս "Համայնաջունջ„ եւ "Համայնաջինջ„:

2 Խօսքիս իմաստը մթին է, բառ մը կը պակսի մէջէն:

3 Համ. "առ եղբայրն ի Բաբելոն„ էջ 2:

գնայ Արշակ ի Բաբելոն երեքտասան բիւրովք։ Յամի հարիւրերորդի քսաներորդի ութերորդի թագաւորութեան իւրոյ իբրեւ մատ եղեւ ի Բաբելոն, անկանի ի վերայ նորա Անտիոքոս յանկարծակի ի ձմեռն[1] ժամանակի՝ ի նեղ վայրի. եւ ոչ կարեն զաւրել, սպառեն զզաւրն, զարկանեն եւ ընկենուն զԱնտիոքոս ի խոնարհ եւ սպանանեն. եւ ձերբակալ առնեն զՍելեւկոս զորդին Անտիոքայ, զոր ունէր ասէն[2] արքայ ի դրանն իւրում թագաւորին[3].

Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ Փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհին Հայոց ի Մծբին քաղաքի։ Եւ զատուցանէ նմա սահմանս զԱրուաստան առ երկրաւն Տաճկաց եւ առ երկրաւն Ասորւոց։ Եւ զԿապուտկեայ[4] առ Կիւղիկեաւ՝ մինչեւ ցեզր ծովուն մեծի արեւմտից, եւ ցհիւսիսոյ կողմանէ ի լեառն մեծ Կովկաս, որ ձգի ընդ կողմանս արեւելից, եւ անցանէ առ սահմանաւն ամուր աշխարհաւն Մարաց. եւ հասանէ ի լեառն Ջարասպ, եւ անցանէ առ Նոր-Շիրական[5] երկրաւն։

---

1 Մեր օր. ին լուսանցքին վրայ՝ “ի ձեռն„ էջ 10։

2 Ցպգրք. եւ Մեր օր. “ասէ„, Համ. “ասէն„ էջ 3. իմաստն այլ զայս կը պահանջէ։

3 Թերեւս “թագաւորութեան„։

4 Անուանս մասին եղած վէճերը, տե՛ս. Մասիս 1862, թիւ 61։

5 Ցպգրք. եւ Մեր օր. էջ 11. Նոր Շիրակ, Համ. էջ 3. “Նոր Շիրան„ (= Նոր Շիրա[կա]ն. Սեբէոս այլ. որ Հայաստանի հին սահմանները գծած ատեն ստրկօրէն Անանունի հետեւած է, ունի Նոր Շիրական, էջ 37։

Եւ յուղարկէ զնա ի Մրծանայ[1] ընդ [յ]արեւմուտս[2] զաւրու մեծաւ եւ թանասուն հազարաց սպառազինաց. եւ մեծամեծ իշխանաւք նախարարաց հազարաց բիւրաւորաց, որում ոչ ոք կարէր զդէմ ունել պատերազմաւ։ Սմա ընդ առաջ ելանէր Բագարատն փառազեան յորդւոցն Արամանեկայ[3] նախարար մեծ հանդերձ զաւրու։ Մատուցանէ նմա պատարագ ոսկի եւ արծաթ, եւ զարդարէ զնա ի սնդր[4] եւ ի վակաս. պսակէ զնա ի թագ հայրենի, եւ նստուցանէ զնա ի վերայ ոսկիապատ[5] ականակուռ գահոյիցն, եւ տայ նմա զդուստր[6] իւր ի կնութիւն։ Զսա արար Արշակ արքայ ասպետ Հայաստան երկրին, որ էր իշխան եւ հրամանատար ամենայն թագաւորութեանն հրամանաց գլուխ, եւ հայր արքայի եւ եղբայր. որում ետ իշխանութիւն տէրութեանն այնորիկ։ Նա կոտորեաց զհսկայսն, որ զաւրաժողով եղեն ի վերայ նորա ի Միջագետս։ Եւ այս են իշխանք Պարթեւաց, որք թագաւորեցինն զկնի Արշակայ հաւր իւրեանց ի Բահլ Շահաստան յերկիրն Քուշանաց։ Որդիք չորք ասեն լեալ Արշակայ արքայի Պարթեւաց. զառաջինն ասեն թագաւորեցոյց Թետալացւոց աշխարհին. զերկրորդն ի վերայ Կիլիկեցւոց,

---

1 Համ. "Մծբնայ", էջ 3։
2 Համ. "ընդ արեւմուտն", անդ։
3 Համ. "Արմանեկայ", անդ։
4 Բառս իմաստը ինծի անծանօթ է։
5 Համ. "ոսկէպատ", անդ։
6 Համ. "զդուստրն", անդ։

զերրորդն ի վերայ Պարթեւաց, զչորրորդն ի վերայ Հայաստան[1] աշխարհին։

[Եւ լինին ամենայն ամք Արշակայ կենաց իւրոց ՃԼ. ամ. եւ թագաւորեաց ամս յիսուն եւ վեց[2]։ Զկնի նորա թագաւորէ որդի նորա Արշակ ի վերայ Պարթեւաց՝ ի Բահլ Շահաստանի յերկիրն Քուշանաց՝ ամս Հ.։ Ապա որդի նորա Աշնաշ՝ ամս ԼԲ. Ապա Արշէն՝ ամս ԻԲ. ապա Արշաւիր՝ ամս ԽԵ. — ապա Արտաշէս ամս ԼԴ. ապա Դարեհ՝ ամս Լ. ապա Արշակ ամս ԺԷ. ապա Արտաշիր՝ ամս ԽԶ. ապա Պերոզ ամս. ԿԴ. ապա Վաղարշակ՝ ամս Ծ. ապա Արտաւան՝ ամս ԼԶ. ապա լինին ամենայն ամք Պարթեւաց տէրութեանն ամք ՇՀԳ [Զ?][3]։

Արդ՝ թագաւորէ Արշակ փոքր կոչեցեալ՝ յամի հարիւրերորդի քսան եւ իններորդի թագաւորութեան Արշակայ հաւր իւրոյ՝ ի վերայ Հայաստան երկրի՝ ի Մրծուին[4] քաղաքի եղբարբ իւրով Վաղարշակաւ՝ զոր թագաւորեցոյց Հայաստան աշխարհիս՝ ամս ԽԲ. ապա Արշակ՝ ամս ԺԳ. ապա Արտաշէս՝ ամս ԻԵ. ապա Արտաւան եւ Արշաւիր, ամս ԺԲ. ապա Արշակ որդի Արշաւրի՝ ամս ԼԷ. ապա Երուանդ որդի Արշակայ՝ ամս ԻԱ. ապա Արտաշէս եղբայր նորին՝ ամս ԾԲ.[5] ապա Տիրան որդի Արտաշէսի՝ ամս ԻԲ. ապա Տիգրան եղբայր նորին՝ ամս ԽԲ. ապա Արշամ ամս Ի. ապա Աբգար որդի Արշամայ՝ ամս ԼԸ. ապա Սանատրուկ քեռորդի Աբգարու՝ ամս Լ. ապա Արտաշէս որդի Սանատրկոյ՝[6] ամս ԽԱ. ապա Արտաւազդ եւ ապա

---

[1] Համ. ի վերայ Հայաստան երկրին, անդ։

[2] Մեր օր. Եւ լինին ամենայն ամք Արշակայ թագաւորութեանն ՃԼ ամ. զկնի նորա թագաւորէ եւն. էջ 11։

[3] Մեր օր. էջ 11. եւ Ցուցր. Միհրդ. ՇՀԳ։

[4] Համ. "ի Մծբին„ էջ 3։

[5] Մեր օր. ամս ՀԲ. էջ 11։

[6] Համ. "Սանատրուկոյ„ անդ։

Տիգրան, որդիք Արտաշիսի՝ ամս ԽԴ. ապա Վաղարշ որդի Տիգրանայ՝ ամս Ի. ապա քաջն Խոսրով որդի Վաղարշու՝ ամս ԽԸ. ապա մեծն Տրդատես որդի Խոսրովու՝ ամս ԾԶ. ապա Խոսրով որդի Տրդատայ՝ ամս Թ. Տիրան որդի Խոսրովայ՝ ամս ԽԸ.[1] Արշակ որդի Տիրանայ ամս Է. Պապ որդի Արշակայ՝ ամս Է.]

. . . . Քանզի ոչ են սոքա (Մամիկոնեանք) որդիք ազգածնինն[2] Արամանեկայ, այլ են եկեալ ի Ճենաստանէ յամս Արտեւանայ արքայի Պարթեւաց եւ մեծին Խոսրովու արքայի Հայոց. որպէս լուայ յառնէն մեծէ՝ որ եկեալ էր հրեշտակութեամբ ի Ճենաց թագաւորէն առ արքայն Խոսրով, յոր իմ հարցեալ ի դրանն արքունի եթէ՝ “Ազգ մի մեծ ի Հայաստան երկրի կայ՝ զորմէ ասեն եթէ ի ձերմէ աշխարհէն[3] գնացեալ են„: Եւ նա ասաց ինձ. “Ասեն, ասէ, գուսանք եւ ի մերում աշխարհին յերգս իւրեանց, զՄամիկն եւ զԿոնակն արս երկուս լեալ քաջս եւ գլխաւոր եղբարս հարազատս, որդիք Կառնամայ նախարարին՝ որ էր երկրորդ ի թագաւորութեանն Ճենաստանի: Որոյ յետ մահուանն[4] առնս այսորիկ, առ զկին սորին թագաւորն նոցին ի կնութիւն: Եւ եղեւ ի նմանէ որդի՝ որ զկնի մահուան հաւր իւրոյ յաջորդեալ նստաւ յաթոռ հայրենի թագաւորութեանն: Եւ նոքա երկու եղբարք նորա ի մաւրէ, եւ ոչ ի հաւրէ,

1 Մեր օր. Ը. էջ 12:
2 Ազգածնինն, Մեր օր. “ազգածնին„ էջ 13:
3 Մեր օր, “աշխարհի„, էջ 13:
4 Մինհրդ. Տպգրք. եւ մեր օր. էջ 13:

զերրորդն ի վերայ Պարթեւաց, զչորրորդն ի վերայ Հայաստան[1] աշխարհին։

[Եւ լինին ամենայն ամք Արշակայ կենաց իւրոց ՃԼ. ամ. եւ թագաւորեաց ամս յիսուն եւ վեց[2]։ Զկնի նորա թագաւորէ որդի նորա Արշակ ի վերայ Պարթեւաց՝ ի Բահլ Շահաստանի յերկիրն Քուշանաց՝ ամս Հ.։ Ապա որդի նորա Աշնաշ՝ ամս ԼԲ. Ապա Արշէն՝ ամս ԻԲ. ապա Արշաւիր՝ ամս ԽԵ. — ապա Արտաշէս ամս ԼԴ. ապա Դարեհ՝ ամս Լ. ապա Արշակ ամս ԺԷ. ապա Արտաշիր՝ ամս ԽԶ. ապա Պերոզ ամս. ԿԴ. ապա Վաղարշակ՝ ամս Ծ. ապա Արտաւան՝ ամս ԼԶ. ապա լինին ամենայն ամք Պարթեւաց տէրութեանն ամք ՇՀԴ [Զ?][3]։

Արդ՝ թագաւորէ Արշակ փոքր կոչեցեալ՝ յամի հարիւրերորդի քսան եւ իններորդի թագաւորութեան Արշակայ հաւր իւրոյ՝ ի վերայ Հայաստան երկրի՝ ի Մծուրին[4] քաղաքի եղբարբ իւրով Վաղարշակաւ՝ զոր թագաւորեցոյց Հայաստան աշխարհիս՝ ամս ԽԲ. ապա Արշակ՝ ամս ԺԳ. ապա Արտաշէս՝ ամս ԻԵ. ապա Արտաւան եւ Արշաւիր, ամս ԺԲ. ապա Արշակ որդի Արշաւրի՝ ամս ԼԷ. ապա Երուանդ որդի Արշակայ՝ ամս ԻԱ. ապա Արտաշէս եղբայր Նորին՝ ամս ԾԲ.[5] ապա Տիրան որդի Արտաշէսի՝ ամս ԻԲ. ապա Տիգրան եղբայր Նորին՝ ամս ԽԲ. ապա Արշամ ամս Ի. ապա Աբգար որդի Արշամայ՝ ամս ԼԸ. ապա Սանատրուկ քեռորդի Աբգարու՝ ամս Լ. ապա Արտաշէս որդի Սանատրկոյ՝[6] ամս ԽԱ. ապա Արտաւազդ եւ ապա

---

1 Համ. ի վերայ Հայաստան երկրին, անդ։

2 Մեր օր. Եւ լինին ամենայն ամք Արշակայ թագաւորութեանն ՃԼ ամ. զկնի նորա թագաւորէ եւն. էջ 11։

3 Մեր օր. էջ 11. եւ Ցուցր. Միհրդ. ՇՀԴ։

4 Համ. «ի Մծրին» էջ 3։

5 Մեր օ.. ամս ՀԲ. էջ 11։

6 Համ. «Սանատրուկոյ» անդ։

Տիգրան, որդիք Արտաշիսի՝ ամս ԻԴ. ապա Վաղարշ որդի Տիգրանայ՝ ամս Ի. ապա քաջն Խոսրով որդի Վաղարշու՝ ամս ԽԸ. ապա մեծն Տրդատէս որդի Խոսրովու՝ ամս ԾԶ. ապա Խոսրով որդի Տրդատայ՝ ամս Թ. Տիրան որդի Խոսրովայ՝ ամս ԽԸ.[1] Արշակ որդի Տիրանայ ամս Է. Պապ որդի Արշակայ՝ ամս Է.]

. . . . Քանզի ոչ են սոքա (Մամիկոնեանք) որդիք ազգածնինն[2] Արամանեկայ, այլ են եկեալ ի Ճենաստանէ յամս Արտաւանայ արքայի Պարթեւաց եւ մեծին Խոսրովու արքայի Հայոց. որպէս լուայ յառնէն մեծէ՝ որ եկեալ էր հրեշտակութեամբ ի Ճենաց թագաւորէն առ արքայն Խոսրով, յոր իմ հարցեալ ի դրանն արքունի եթէ՝ "Ազգ մի մեծ ի Հայաստան երկրի կայ՝ զորմէ ասեն եթէ ի ձերմէ աշխարհէն[3] գնացեալ են„։ Եւ նա ասաց ինձ. "Ասեն, ասէ, գուսանք եւ ի մերում՝ աշխարհին յերգս իւրեանց, զՄամիկն եւ զԿոնակն այս երկուս լեալ քաջս եւ գլխաւոր եղբարս հարազատս, որդիք Կառնամայ Նախարարին՝ որ էր երկրորդ ի թագաւորութեանն Ճենաստանի։ Որոյ յետ մահուանն[4] առնս այսորիկ, ա՛ռ զկին սորին թագաւորն Նոցին ի կնութիւն։ Եւ եղեւ ի նմանէ որդի՝ որ զկնի մահուան հաւր իւրոյ յաջորդեալ նստաւ յաթոռ հայրենի թագաւորութեանն։ Եւ նոքա երկու եղբարք նորա ի մաւրէ, եւ ոչ ի հաւրէ,

---

1 Մեր օր. Ը. էջ 12։

2 Ազգածնինն, Մեր օր. "ազգածնին„ էջ 13։

3 Մեր օր. "աշխարհի„ էջ 13։

4 Միհրդ. Տպգր. եւ մեր օր. էջ 13։

*ապստամբեալ ի բաց կացին ի Նմանէ. եւ միաբանեալ ընդ ինքեանս[1] զմասն մի ի Նախարարացն եւ ի զաւրացն՝ առնեն ուխտ միաբանութեան։ Որոց խորհեալ խորհուրդ չարութեան սպանանել զեղբայրն իւրեանց՝ զԹագաւորն[2] աշխարհին Ճենբակուր, եւ առնուլ զԹագաւորութիւն Նորա։ Եւ զաւրաժողով լինէին Մամիկն եւ Կոնակն ի վերայ Նորա ի միում տեղւոջ աշխարհին իւրեանց, եւ բաժանի զաւր աշխարհին յերկուս։ Ազդ լինի Ճենբակուրի[3], գումարէ եւ Նա զզաւրս իւրոյ կողմանն՝ եւ գնայ ի վերայ Նոցա ի պատերազմ։ Եւ յարձակին ի վերայ միմեանց՝ հարկանեն սրով սուսերի, եւ սպանեն զզաւրն ապստամբական։ Փախստական լեալ Մամիկն եւ Կոնակն գնան առ արքայն Արշակունի՝ որ Նստէր ի Բահլ Շահաստանի՝ յերկիրն Քուշանաց։ Եւ էր խաղաղութիւն ի մէջ երկոցունց[4] Թագաւորութեանցն այնոցիկ։*

*Յայնժամ Մեծաւ աղերսիւ խնդրեալ զնոսա Ճենբակուրի՝ յարքայէն Պարթեւաց. “զի՞ բարձցէ ի միջոյ, ապա թէ ոչ՝ լուծցի՛ ուխտ խաղաղութեանն՝[5] որ ի միջի մերում„։ Իսկ Նորա խնայեալ յարսն, ոչ ետ զնոսա ի ձեռս Նորա, այլ գրէ առ Նա սիրով. “Անդրէն[6] ուխտ խա-*

---

1 Համ. “ընդ միմեանս„ էջ 4։

2 Համ. “զԹագաւորն„, անդ։

3 Մեր օր. “Ճեճբակուրի„, էջ 14, Համ. “Ճենբակուրի„ լուսանցքին վրայ՝ “Ճեճբակ„։

4 Միհրդ. Տպգր. “երկոցուն„, էջ 30։

5 Մեր օր. “խաղաղութեանն„, էջ 14։

6 Մեր օր. Գրէ առ Նա սիրով անդրէն՝ եւն. էջ 14։

ղաղութեան մերոյ ասէ, Հաստատուն կացցէ ի միջի մերում„ զի երդուեալ եմ առ Նոսա, զի Նոքա մի՛ մեռցին, այլ ետու տանել զնոսա ի մուտս արեւու եւ յեզր երկրի՝ ի տեղին յայն՝ ուր[1] արեգակն ի մայրն մտանէ։ Յայնժամ Հրամայէ արքայն Պարթեւաց զաւրաց իւրոց տանել զնոսա զգուշութեամբ մեծաւ՝ կնաւ եւ որդւովքն իւրեանց եւ ամենայն աղխիւն իւրեանց յերկիրն Հայոց առ ազգական իւր արքայն Արշակունի՝ որ էր թագաւոր Հայաստան երկրին, ուր եւ սերեալ բազմացան յոյժ, եւ եղեն յազգ մեծ ի Մամիկոնայ եւ ի Կոնակայ, յայսմանէ այն է սպարապետ։

---

[1] Մեր օր. Ա–ր. էջ 14։ Տպգրք. “որ„։



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր, Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1880: Էջ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Տաճ Դ., Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիստենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Տրմչէ Ա. եւ Գ. Փիւռն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Ֆր. 1.25

Ը. Կարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Լ+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթու-պօլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գծն-կարիւ.) 1893: Էջ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ. Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թարգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտ. 55 պատկ.:) 1894: Էջ Ը+103: Փր. 2.—

ԺԴ. Կարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հատ. Բ. կամ Յաւելուած: Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոբէլ-ման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ. Գիրք Հերձուածոց. Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Փր. 2.50

ԺԸ. Տիռյեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքա-ղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., “Վարդապետութիւն առա-քելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հե-

տազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Եջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Եջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ, Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Եջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Եջ Ա—Ը: 273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Եջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօղուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Եջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Եջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը Հայ Հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Եջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Եջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Եջ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Եջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ միճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատ. 1780–1825: 1899: Էջ Է+554: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Փր. 1.—

ԼԵ. Կարրիեր Ս., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Փր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վէբէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ե+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Փր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ.. Արդի լեզուագիտութիւնը: Հատ Ա.: 1903: Էջ Ը+204: Փր. 3.—

ԽԳ. Մարկուարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Փր. —.75

ԽԴ. Գելցեր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով) Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք. Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ Ը+117: Փր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ բանասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պետերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն, Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պետերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Փր. 7.—

ԾԴ. Պետերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90 Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԴ+433:
Փր. 5.—

ԾԶ. Աճառեան Հ., Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Փր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Փր. 7.—

ԾԸ¹. Ակինեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 1—60:

ԾԸ². Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106:
Փր. 1.50

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԺԲ+87: Փր. 1.—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԷ+315: Փր. 5.—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը: 1910: Էջ 73: Փր. 1.—

ԿԲ. Գիւտէրպոք Կ., Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը+162:
Փր. 2.50

ԿԳ. Սամուէլեան Խ., Միխիթար Գոշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը: 1911: Էջ ԺԲ+344: Փր. 5.—

ԿԴ. Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան: Ա. 1911: Էջ Ը+97:
Փր. 1.50

ԿԵ¹. Յովնանեան Հ. Ղ. Վ., Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկական. Էջ 1–48:

ԿԵ². Ակինեան Հ. Ն., Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք: 1911. Էջ 49-117:
Փր. 1.50

ԿԶ. Մ ե ն ե վ ի շ ե ա ն Հ. Գ. Ծ. Վ., Գրիգոր Մագիստրոսի «Գամագատականի» ամբողջական լուծումը: 1912: Էջ ԺԱ+162: Փր. 1.50

ԿԷ. Գ ա ք ր ի ե լ ե ա ն Դ կ տ. Մ. Ս., Ակնայ Գաւառաբարբառը եւ Արդի Հայերէն լեզուն: 1912: Էջ Է+416: Փր. 6.—

ԿԸ. Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., Պատմութիւն հայերէն նշանագրերու եւ վարուց Ս. Մաշթոցի: Թրգմ. Հ. Ա. Վարդանեան: 1913: Էջ Է+59: Փր. 1.50

ԿԹ. Աճառեան Հ., Հայոց գրերը, ընդ մամլով:

Հ. Մ ա ռ ի կ ե ա ն Հ. Ա., Անանունը կամ Կեղծ-Սեբէոս, քննական ուսումնասիրութիւն: 1913: Էջ Է+91: Փր. 1.60

---